Bhagavadgita kam eraneli...

# ԲՀԱԳԱՎԱԴԳԻ́ՏԱ́

## ԿԱՄ

# ԵՐԱՆԵԼՈՒ ԵՐԳԸ

*Թարգմանեց Հնդկերէնից*
*Ֆրանսերէնի համեմատութեամբ*
*ՀՐԱՉԵԱՅ Յ. ԱՃԱՌԵԱՆ*

Արտատպած «Արարատ» ամսագրից

ՎԱՂԱՐՇԱՊԱՏ
Ելեկտրաշարժ Տպարան Մայր Աթոռոյ Ս. Էջմիածնի
1911

# ԲՀԱԳԱՎԱԴԳԻ՛ՏԱ՛

## ԿԱՄ

# ԵՐԱՆԵԼՈՒ ԵՐԳԸ

*Հնդկական երկու ազգակից ցեղերի մէջ պատերազմ կար. Թշնամի բանակները շարուած էին միմեանց դէմ։ Պա՛նդաւաների զօրապետ Արջունան գթասրտութեամբ շարժուած՝ չէր ուզում կռուել իր ազգակիցների դէմ. Նրա զօրավարներից մէկը՝ Կրիշնա, որ Աստուծոյ իններորդ և վերջին մարմնացումն էր, մէջտեղ է գալիս, խօսում է Արջունայի հետ, յորդորում է նրան վարել արդար կռիւը, և այս առթիւ բացատրում է Աստուծոյ, Հոգու, Մարդկային կեանքի ու վախճանի, երկրային ու երկնային կեանքի և այլ գաղտնիքներ։ Սանջայան, որ լսում է նրանց, պատմում է մեզ այս գրքով Կրիշնայի և Արջունայի խօսակցութիւնը։*

*Հնդկերէն բնագիրը ոտանաւոր է. մեր արձակ թարգմանութեան մէջ հնդկերէնի իւրաքանչիւր տունը սկսում ենք նոր տողով. Թարգմանութեան մէջ աշխատել ենք բոլորովին հաւատարիմ լինել բնագրին, պահելով մինչև իսկ, որքան կարելի՛ է, բնագրի շարադասութիւնը և մրցելով միշտ հնդկաց սրբազան լեզուի (Սանսկրիտերէնի) ճոխութեանց հետ։ Տեղ տեղ աւելացրել ենք մեր կողմից ծանօթութիւններ՝ հնդկական աշխարհին անծանօթ ընթերցողին օգնելու համար։*

**Հ. Աճառեան.**

## ԲՀԱԳԱՎԱԴԳԻ՛ՏԱ՛ ԿԱՄ ԵՐԱՆԵԼՈՒ ԵՐԳԸ

## Օ՛մ[1])

### Ա.

Դհրտարա՛շտրան խօսեց.

*Կուրուքշետրայի սուրբ դաշտում կռուելու համար հաւաքուած մեր զինուորներն ու Պա՛նդաւաները ի՞նչ արին, ո՛վ Սանջայա:*

Սանջայան խօսեց.

*Տեսնելով Պա՛նդաւաների ռազմական ճակատը, Դուրյո՛դհանա թագաւորը մօտեցաւ իր ուսուցչին և այսպէս խօսեց.*

*«Նայի՛ր, ով իմ ուսուցիչ, Պա՛նդուի որդիների այս մեծ բանակը, որ ճակատ՝ է յարդարած Դրուպադայի ճարպիկ որդու՝ քո աշակերտի ձեռքով:*

*«Այնտեղ են մեծաղեղն հերոսներ՝ Բհի՛մա և Արջունա մարտիկների նման, ինչպէս Եուեուդհա՛նա Վիրա՛տա և մեծակառքն Դրուպադա,*

*«Դհրշտակետու, Ճէկիտա՛նա, Կա՛շիի կտրիճ թագաւորը, Պուրուջիտ, Կունտիբհօ՛ջա և Շեվիայի իշխանը,*

*«Կտրիճն Եուդհա՛մանեու, դիւցազն Ուտտամաօջա, Սաօբհադրայի և Դրաօպադիի որդիները, բոլորն էլ մեծամեծ կառքերով:*

*«Նայի՛ր նոյնպէս մերոնց կտրիճները, ո՛վ բարձրագոյն Բրա՛հման[2]). Ես կանուանեմ իմ բանակի առաջնորդներին յիշեցնելու համար քեզ.*

*«Դու, Բհիշմա, Կարնա, յաղթական Կրպա, Աշվատթա՛մա, Վիկարնա, նոյնպէս Սօմադատտայի որդին.*

*«Եւ ուրիշ բազմաթիւ հերոսներ, անձնազոհ ինձ համար, բոլորն էլ լիազէն ու ռազմագէտ.*

*«Անթիւ է մեր բանակը Բհի՛շմայի առաջնորդութեան տակ. բայց թուելի է նրանցը, որի առաջնորդն է Բհի՛մա:*

---

1) Օ՛մ Աստուծոյ սրբազան կոչականն է, ինչպէս Է կամ Որ Էն.

2) Բրահմա նշանակում է Աստուած. իսկ բրա՛հման քահանայ.

*«Ձեզանից իւրաքանչիւրը թող պահպանի իրան ընկած տեղը. և բոլորդ պաշտպանեցէք Բհի՛շմային»։*

*Նրանց սրտերը ոգևորելու համար, կուրուների նախապապը առիւծի նման մռնչեց և հնչեցրեց խեցեայ շեփորը։*

*Եւ իսկոյն խեցեայ շեփորները, սրինգները, դափերն ու թմբուկները բոլորը հնչեցին մեծաժխոր աղմուկով։*

*Եւ այն ժամանակ սպիտակ ձիերով լծուած մեծ կառքի մէջ կանգնուն՝ Մադհուի սպանողը[1]) և Պա՛նդուի որդին[2]) փչեցին իրանց երկնային շեփորը։*

*Դիսախռիւ ռազմիկը փչեց հսկայ գալարափողը, Հարստութեանց յաղթական դիւցազնը փչեց աստուածային շեփորը, Գայլորովայնն Բհի՛մա, որի գործերը զարհուրելի են, փչեց եղեգնեայ մեծ շեփորը,*

*Կունտի՛ի որդին, Եուդհիշտիրա, բռնած էր Յաղթական շեփորը, Նակուլա և Սահադէվա կրում էին Քաղցրահնչիւն շեփորն և գոհարազարդ ու ծաղկազարդ փողը.*

*Կա՛շիի գեղեցկաղեղն թագաւորը, մեծակառքն Շիկանդին, Դհրշտադհումա, Վիրա՛տա և անպարտելին Սա՛տհակի,*

*Դրուպադա և բոլոր Դրուպադեանները, երկրի իշխաններ, և սաօրհադրայի հաստաբազուկ որդիները հնչեցրին իրենց շեփորները մի առ մի։*

*Այն ժխորը Դհրտարա՛շտրայի որդիների սրտերը պատռելով, երկինքն ու երկիրը դղրդում էր։*

*Այն ժամանակ ճակատած տեսնելով Դհրտարա՛շտրայի որդիներին, Պա՛նդուի կապկադրօշ գիսախռիւ որդին երբ նետերը ճայթում էին. վերցրեց իւր աղեղը՝*

*Եւ այսպէս խօսեց Կրիշնային. «Երկու բանակների մէջտեղում կանգնեցրու իմ կառքը.*

*«Որպէս զի տեսնեմ ես ինձ դէմ կռիւ ուզողներին, որոնց հետ մենք պիտի մարտնչենք այս մահացու կռուի մէջ,*

*«Որպէս զի նկատեմ ես, թէ ո՞րոնք են այստեղ հաւաքուած պաշտպանելու Դհրտարա՛շտրայի եղեռնագործ որդուն կռուով»։*

### Սանջայեան Խօսեց.

*Երբ այսպէս խօսեց Արջունան, գիսախռիւն Կրիշնա եր-*

---

1) Կրիշնայի տիտղոսներն են Մադհուի սպանող. գիսախռիւ. հեթարծակ մարտիկ. հովուապետ. Հարի, սպանող Կեշինի եւ այլն.

2) Արջունայի տիտղոսներն են Պա՛նդուի որդի, Կունդի՛ի որդի Թշնամիների յաղթական. Բհա՛րատա. Պրիթայի որդի. Կուրուի որդի եւլն.

կու բանակների մէջտեղ կանգնեցրեց գեղեցիկ կառքը,

Եւ Բհիշմայի, Դրոնայի ու բոլոր իշխանների դէմ՝ այսպէս ասաց. «Ո՛վ իշխան, նայի՛ր այստեղ հաւաքուած բոլոր Կուրուներին».

Այն ժամանակ նայեց Արջունան և տեսաւ հայրեր, պապեր, ուսուցիչներ, մօրեղբայրներ, եղբայրներ, որդիներ, թոռներ, բարեկամներ,

Փեսաներ և ընկերներ երկու բանակների մէջտեղ: Տեսնելով Կունդիի որդին այս բոլոր ազգականներին կռուի կանգնած,

Խոր գթութեամբ զգացուած, այսպէս խօսեց մշտահար.

### Արջունան խօսեց.

«Տեսնելով այս ազգականներիս, ո՛վ Կրիշնա, կռուի կանգնած և ճակատ յարդարած, իմ անդամները թուլանում են, դալկանում է իմ երեսը, իմ մարմինս սարսռում է, փշաքաղւում են իմ մազերը,

Աղեղս ձեռքից վայր է ընկնում, մորթս ամբողջ այրւում է, ոտք կանգնել չեմ կարողանում և իմ միտքը տատանւում է:

Ես զգում եմ չարաշուք գուշակութիւններ, ո՛վ հերարձակ մարտիկ, և ոչինչ լաւ բան չեմ նկատում այս եղբայրասպան կռուի մէջ:

Ոչ յաղթութիւն եմ ուզում, ո՛վ Կրիշնա, ոչ թագաւորութիւն, ոչ հաճոյք, ի՛նչ բարիք ենք ստանում մենք թագաւորութիւնից, հաճոյքներից և նոյն իսկ կեանքից:

Նրանք՝ որոնց համար մենք պէտք ցանկանայինք թագաւորութիւն, հաճոյք և հարստութիւն, նրանք այստեղ կռուի են շարուած, արհամարհելով իրանց կեանքն ու հարստութիւնը.

Ուսուցիչներ, հայրեր, որդիներ, պապեր, մօրեղբայրներ, փեսաներ, թոռներ, աներորդիներ ու խնամիներ:

Թող ինձ սպանեն, ես չեմ ուզում իրանց մահը, մինչև իսկ եթէ երեք աշխարհների թագաւորութիւնն ինձ տան. ո՛ւր մնաց երկրի:

Սպանելով Դհրիտարաշտրայի որդիներին, ի՛նչ հաճոյք պէտք է ստանանք մենք, ո՛վ դիւցազն. բայց մեղքը պիտի կպչի մեր վզին, եթէ սպանենք նրանց. թէև մահապարտ լինեն:

Մեզ արժան չէ ուրեմն սպանել Դրտարաշտրայի որդիներին, մեր ազգականներին, որովհետև կոտորելով մեր ազգատոհմը, ուրա՞խ պիտի լինինք մենք:

Եթէ սրանք չեն տեսնում իրանց կուրացած հոգով ազգասպանութեան և բարեկամներին ըկելու մեղքը,

Մենք էլ յետ չպիտի դառնանք այս մեղքից, գիտենալով հանդերձ ազգասպանութեան չարիքները.

Ընտանիքի ջնջումով ջնջւում են և ընտանիքի յաւիտենական օրէնքները. օրէնքների ջնջումով ամբողջ ընտանիքը անօրէնութեամբ պաշարւում է.

Անօրինութեամբ, ո՛վ Կրիշնա, կանայք ապականւում են և կանանց ապականութեամբ, ո՛վ Հովուապետ, ծնւում է դասակարգային խառնութիւնը.

Եւ այս խառնակութեամբ դժոխքն են ընկնում ոճրագործների և նոյն իսկ ընտանիքի հայրերը, զրկուելով սրբազան կարկանդակի և ջրի ընծայաբերութիւնից։

Եւ այսպէս, ազգասպանների մեղքով՝ որ խառնակում է դասակարգերը, ջնջւում են ցեղերի և ընտանիքների յաւիտենական օրէնքները։

Իսկ այն մարդիկ, որոնց ընտանեկան զոհաբերութիւնները ջնջուած են, նրանց բնակարանը անշուշտ դժոխքն է։ Այսպէս են ուսուցանում մեզ Ս. Գրքերը։

Ո՛հ, մի մեծ մեղք գործադրել մենք կը վճռենք, եթէ թագաւորութեան հաճոյքի հրապոյրով սպանել վճռենք մեր ազգակիցներին։

Եթէ ինձ զինաթափ ու անպաշտպան Դհրտարաշտրայի զինուած որդիքը պատերազմում սպանէին, աւելի երանելի կը լինէր ինձ համար»։

Սանջայան խօսեց

Այսպէս խօսելով Արջունան բանակամիջում, կառքի վերայ նստեց, բաց թողնելով իր նետն ու աղեղը, և հոգին յուզուած վշտերից։

Այստեղ վերջանում է բհագավադգի՛տա՛յի առաջին գլուխը, որի անունն է Արջունայի վիշտը։

---

## Բ.

Սանջայան խօսեց.

Մինչդեռ գթով զգացուած և աչքերն արտասուալից, թուլանում էր Արջունա, այսպէս խօսեց Կրիշնան։

Կրիշնան խօսեց.

Ո՞րտեղից է պատերազմի մէջ քո այս վրդովմունքը, որ

*անարժան է Արիաներին, հակառակ երկնից և ամօթաբեր, ո՛վ Արջունա։*

*Մի՛ մեղկանար, Արջունա, դա քեզ վայել չէ. նետի՛ր սրտիդ ամօթալի թուլութիւնը և վե՛ր կաց, ո՛վ թշնամիների յաղթականը:*

Արջունան խօսեց.

*Ի՞նչպէս Բհի՛շմայի ու Դրոնայի դէմ, ո՛վ Կրիշնա, կռուի մէջ նետեր արձակեմ ես, որ պատուել պարտաւոր եմ նրանց:*

*Մեծայարգ անձնաւորութեանց սպանութեան փոխարէն՝ աւելի լաւ էր մուրացած հացով ապրել այս աշխարհում. բայց մինչև իսկ եթէ մի ագահ անձնաւորութիւն սպանէի ես, դարձեալ արիւնոտ հացով պիտի ապրէի:*

*Մենք չգիտենք, թէ ո՞րն է աւելի լաւ, յաղթե՞լ թէ յաղթուիլ: Մարդիկ, որոնց սպանութիւնը պիտի տար մեզ ատել կեանքը, դրանք են կանգնած մեր դէմ. այն է Դհրատարաշտրայի որդիները:*

*Հոգիս համակուած գթութեամբ և մեղքի երկիւղով՝ քե՛զ եմ հարցնում, անգիտակ արդարութեան: Ո՞րն է լաւագոյն միջոցը. ասա՛ ինձ. ես քո աշակերտն եմ. սովորեցրո՛ւ ինձ իմ հարցը:*

*Որովհետև ես չեմ իմանում, թէ իսկի մի բան ինձանից կարո՞ղ է վանել այս ցաւը՝ որ իմ զգայարաններս այրում է. մինչև իսկ եթէ ունենայի երկրի վրայ մի ընդարձակ թագաւորութիւն առանց թշնամու, նոյն իսկ Աստուածների տէրութիւնը:*

Սանջայան խօսեց.

*Այսպէս խօսեց Կրիշնային Արջունան և յայտնելով թէ «Ես չեմ կռուիլ», լռեց:*

*Այն ժամանակ խօսեց Կրիշնան ժպտալով, երբ երկու բանակների մէջտեղ վշտահար մնում էր Արջունան:*

Կրիշնան խօսեց.

*Դու լալիս ես նրանց՝ որոնց վրայ լալ պէտք է չէ. թէև քո խօսքերը իմաստութեան խօսքեր են: Ոչ կենդանիներին են լալիս իմաստունները և ոչ մեռեալներին:*

*Չէ եղել երբէք, որ ես գոյութիւն չունենայի, ոչ էլ դու, ոչ էլ այս իշխանները. և երբէք չպիտի լինի, որ մենք դադրենք գոյութիւնից ապագայում:*

*Ինչպէս մահկանացու մարմնի մէջ յաջորդում են իրար*

մանկութիւն, երիտասարդութիւն և ծերութիւն, նոյնպէս յետոյ հոգին ստանում է մի նոր մարմին, և իմաստունը չի տագնապում այստեղ:

Տարրերի հանդիպումը, որ առաջացնում է ցուրտ, տաք, հաճոյք և ցաւ, ունի վերադարձ և երբէք չէ յաւիտենական: Տոկա՛ նրանց, ո՛վ Կունտի՛ի որդի·

Նա, որին չեն խռովում սրանք, նա, որ անխռով է թէ հաճոյքի և թէ ցաւի մէջ, նա մասնակից է դառնում անմահութեան:

Նա որ չկայ, չի կարող լինել և նա, որ կայ՝ չի կարող չլինել· այս երկուսը ճանաչում են այն իմաստունները, որոնք ճանաչում են ճշմարտութիւնը:

Գիտցի՛ր թէ անջնջելի է նա՝ որով գոյացել է այս ամբողջ տիեզերքը· ջնջումն անջնջելիին՝ ոչ ոք չի կարող առաջացնել:

Այս փոփոխելի մարմինները առաջանում են յաւիտենական, անջնջելի և անփոփոխական մի հոգուց: Կռուի՛ր ուրեմն, ո՛վ Բհարատա:

Նա, որ կարծում է թէ սպանում է, և նա որ կարծում է թէ սպանւում է, սրանք երկուսն էլ սխալւում են· նա չի սպանում, նա չի սպանւում:

Նա երբէք չի ծնւում, նա երբէք չի մեռնում· նա չի գոյացել, նա չի գոյանալու· անծին, անվախճան, յաւիտենական և անսկիզբն, նա չի մեռնիլ՝ երբ մեռցնեն մարմինը:

Նա որ անջնջելի, յաւիտենական, անծին և անվախճան գիտէ նրան, կարո՞ղ է սպանել մէկին, կամ սպանել տալ:

Հին զգեստները ինչպէս հանում է մէկը՝ նորերը հագնելու համար, նոյնպէս հոգին հանում է հին մարմինները, ուրիշ նորերն հագնելու համար:

Նրան չեն թափանցում նետերը, նրան չի այրում բոցը, նրան չեն թրջում ջրերը, նրան չի չորացնում քամին:

Անթափանցելի, անկիզելի, անթրջելի, անչորանալի, յաւիտենական, ամենուրեք, անշարժ, անայլայլ, անեղծանելի:

Անտեսանելի, անճառելի անփոփոխելի· ահա իւր ստորոգելիքը, եթէ դու նրան այսպէս գիտես, մի՛ լար ուրեմն նրան:

Եթէ նրան գիտենայիր իսկ յաւիտենականապէս ծնանելի և մահանալի, դարձեալ չպիտի լայիր նրան:

Որովհետև՝ ով ծնում է պիտի մեռնի, և ով մեռնում է պիտի ծնի· ինչո՞ւ ուրեմն չի կարելի խափանել, լաց մի՛ լինել նրա վրայ:

Անըմբռնելի է էակների սկիզբը, ըմբռնելի է միայն միջոցը, անըմբռնելի է նաև վախճանը. ինչ կայ այստեղ արտասուելի:

Իբր զարմանալիք նայում է մէկը կեանքին, իբրև զարմանալիք ճառում է միւսը կեանքից, իբրև զարմանալիք լսում է ուրիշը նրան, և երբ լսում ենք, ոչինչ չգիտենք:

Հոգին անեղծ բնակւում է ամէն կենդանի մարմնի մէջ. բոլոր այս էակներին դու չես կարող անշուշտ լալ:

Քո պարտականութեանը նայիր և մի՛ խռովիր. արդար պատերազմից դուրս Կշատրիայի 1) համար ոչինչ լաւ բան չկայ:

Երկնքի դուռը բացւում է երջանիկ Կշատրիաների համար մի այսպիսի պատերազմի մէջ, որ ներկայանում է ինքնին:

Եւ եթէ դու այս արդար պատերազմը չմղես, քո պարտականութիւնը և քո պատիւը մերժելով, մեղք կը գործես:

Եւ քո անպատւութիւնը մարդիկ կը պատմեն միշտ. պգայուն մարդու համար անպատւութիւնը մահից աւելի վատ է:

Երկիւղից կռուից փախած պիտի կարծեն քեզ իշխանները. և նրանք, որ քեզ մեծահոգի էին կարծում, պիտի արհամարհեն:

Բազում թշնամանքներ պիտի տեղան քեզ վերայ քո թշնամիները, և պիտի նախատեն քո անկարողութիւնը, որանից աւելի ծանր ինչ կայ:

Եթէ մեռնես, երկինքը պիտի շահես, եթէ ապրես, պիտի տիրես երկրին. ուրեմն վե՛ր կաց, ո՜վ Կունտիի որդի, կռուելու վճռականօրէն:

Հաճոյք և ցաւ, շահ և վնաս, յաղթութիւն և պարտութիւն նոյնը համարիր. նուիրի՛ր քեզ կռուին. և այսպէս պիտի խուսափես մեղքից:

Ահա քեզ բացատրեցի Սանքիայի 2) գիտութիւնը. այժմ Եօգայի 3) վարդապետութիւնը լսիր, որին յարելով դու գործերի կապը դէն կը ձգես:

Չկան այստեղ զուր ճիգեր, վնասներ չկան. մի նշոյլն այս օրէնքին ազատում է մեծագոյն սարսափից:

---

1) Կշատրիա՝ զինուորական դասակարգին պատկանող. միւս երեք դասակարգերն են՝ բրահմաններ (կրօնական դասակարգ). Վայշիաներ երկրագործ. վաճառական ու արհեստաւոր դասակարգ). Սուդրաներ. (ստրուկներ).

2) Բանապաշտ ինքնահայեցողական վարդապետութիւն.

3) Հոգու խորհրդաւոր միացումը գերագոյն Աստուծոյ հետ.

*Հաստատուն է այս վարդապետութիւնը և մի՛ նպատակ ունի. մի անհաստատ վարդապետութիւն անվերջ ճիւղաւորւում է:*

*Այս ծաղկափթիթ խօսքով պարծենում են տգէտները, որ Վեդաներից[1]) է. «էլ ուրիշ բան չկայ», ասում են նրանք:*

*Անձնատուր հաճոյքի, միայն երկնապաշտ, ընդունում են այդ Գիրքը, որ վերակենդանութիւնը համարում է իբր գործերի վարձք, և ծէսերի առատութեամբ տալիս է հարստութիւն և իշխանութիւն:*

*Հարստութեան և իշխանութեան սիրող այս մարդիկ, մոլորուած այս խօսքով, ինքնահայեցողութեան միակ հաստատուն վարդապետութիւնը չեն ճանաչում:*

*Երեք յատկութիւններ կան Վեդայի մէջ. ազատ եղիր այդ երեք յատկութիւններից, ո՛վ Արջունա. հոգիդ անբաժանելի, հաստատուն և ինքնիշխան թող լինի. միակ մտածմունքդ երջանկութիւնը չլինի:*

*Ինչքան առատութիւն է մի աւազանում, որի ջրերն ամէն կողմից հեղեղւում են, նոյնքան նիւթ կայ ամբողջ վեդաներում Բրահմանի համար:*

*Գործերիդ ուշադիր եղիր և ոչ երբէք նրա վարձատրութեան համար. բայց մի՛ խուսափիր գործից.*

*Եօգայով հաստատուն՝ գործի՛ր, դէն ձգելով ցանկութիւնը. յաջողութեան առաջ անտարբեր եղիր. Եօգան հոգու անտարբերութիւն է սովորեցնում:*

*Աւելի ստոր է գործը Եօգայից. խոհման մէջ որոնիր քո ապաւէնը. թշուառ են վարձատրութեան սպասողները:*

*Խոհման անձնատուր մարդը ազատւում է բարի և չար գործերից. ուրեմն ընդունիր Եօգան. Եօգան գործերի մէջ երջանկութիւն է գտնում:*

*Խոհման անձնատուր իմաստուն մարդիկ գործերի վարձատրութիւնը թողնելով, և խուսափելով ազգականական կապերից՝ գտնում են փրկութեան ապաստանարանը:*

*Երբ մոլորութեան մութ սահմաններն անցնի քո միտքը, այն ժամանակ դու կարող կը լինիս արհամարհել անցեալ և ապագայ վէճերը:*

*Երբ այս սկզբունքներից հեռու մնալով, քո հոգին անգրգռուելի և հաստատուն գտնուայ հայեցողութեամբ, այն ժամանակ դու կը հասնես Եօգային:*

---

[1]) Ս. Գիրք Հնդկաց. որի չորս մասերն են. Ռիգ. Եաջուր. Սամա. Աթարվա.

### Արջունան խօսեց:

*Իմաստութեան և ինքնահայեցողութեան մէջ կատարեալ մարդու նշանը ո՞րն է. նա ինչպէս մտքով անշարժ է խօսելիս, հանգչելիս գործելիս:*

### Կրիշնան խօսեց.

*Երբ հրաժարւում է բոլոր ցանկութիւններից, որ հոգին են թափանցում, երբ ինքն իրանով է երջանիկ այն ժամանակ նա կատարեալ իմաստուն է կոչւում:*

*Երբ անայլայլ է ձախորդութեան մէջ, երբ ջնջել է սէր, երկիւղ, բարկութիւն, այն ժամանակ նա կոչւում է կատարեալ իմաստուն մենակեաց:*

*Երբ նա չի զգածւում ոչ մի բանում, ոչ բարիքի և ոչ չարիքի մէջ, ոչ ուրախանում է, ոչ բարկանում, նրա իմաստութիւնը կատարեալ է:*

*Կրիայի պէս, որ իր անդամները իրան է քաշում, եթէ նա իրան քաշէ իր զգայարանները զգայութիւններից, նրա իմաստութիւնը կատարեալ է*

*Ժուժկալ մարդուց յետ են փախչում առարկաները, հոգու զգայութիւնները յետ են փախչում այն մարդուց, որ թողել է նրանց:*

*Սակայն երբեմն անզուսպ կրքերը բռնի քաշում են նաև ամէնից ժուժկալ իմաստունի հոգին:*

*Նրանց զսպելուց յետոյ, թող նա նստի միտքը յառած ինձ. և երբ նա իր զգայարաններին նուաճել է, նրա իմաստութիւնը կատարեալ է:*

*Երբ մարդ նայում է զգայական առարկաներին, նրա մէջ հակում է ծնւում դէպի նրանց. և այդ հակումից ծնւում է ցանկութիւնը. և ցանկութիւնից ծնւում է կիրքը:*

*Կրքից առաջանում է մտքի շփոթութիւն, մտքի շփոթութիւնից խելացնորութիւն, խելացնորութիւնից բանականութեան կորուստ. և բանականութեան կորուստով նա կորած է:*

*Բայց երբ մարդ մօտենում է զգալի առարկաներին զուրկ սիրուց և ատելութիւնից, հպատակութեամբ և համակերպութեամբ, նա դէպի անդորրութիւնն է գնում:*

*Անդորրութիւնից ծնւում է նրա մէջ բոլոր ցաւերի հեռացումը, անդորրութեամբ իր բանականութիւնը հաստատւում է:*

*Իմաստուն չէ Եօգային չհետևողը: Եօգային չհետևողը չի խոկալ. ով չի խոկայ, չունի հանգիստ. և անհանգստին ո՞ւր է երջանկութիւն:*

*Ով զգայարանների մոլորութեան է յանձնում հոգին, նրա բանականութիւնը քշւում է ինչպէս նաւը քամիներից ջրերի վրայ։*

*Այսպէս ուրեմն նա, որի զգայարաններն ամէն կողմից փակուած են զգայական առարկաների առաջ, կատարեալ իմաստուն է։*

*Ուր գիշեր է բոլոր արարածների համար, արթուն է ինքնազուսպ մարդը. և ուր արթուն են արարածները, գիշեր է իմաստուն մենակեացի համար։*

*Մշտազեղուն անփոփոխ Ովկէանի մէջ կորչում են գետերը. և մարդը, որի մէջ կորչում են ցանկութիւնները բոլոր՝ խաղաղութիւնն է գտնում. բայց ոչ հաճոյասէրը։*

*Վանելով բոլոր ցանկութիւնները, թող մարդը գնայ առանց ցանկութեան, առանց տենչանքի, առանց հպարտութեան. նա դէպի խաղաղութիւնն է գնում։*

*Ահաւասիկ աստուածային հանգիստը. ով նրան հասաւ՝ չի տանջւում. և ով մնայ նրա մէջ մինչև վերջին օրը, նա շիջանում է Նիրվանայի մէջ* [1])

Այստեղ վերջանում է Բհագավադգի՛տա՛յի երկրորդ գլուխը, որի անունն է բանական գիտութեան Եօգա։

---

## Գ.

### Արջունան խօսեց.

*Եթէ դու կարծում ես՝ թէ գործից աւելի բարձր է միտքը, ինչո՞ւ ինձ այսպիսի մի զարհուրելի գործի ես դրդում։*

*Քո երկմիտ խօսքերից իմ միտքը կարծես պղտորուած է։ Արտասանի՛ր միայն մի օրէնք, որով լաւագոյնին հասնէի ես։*

### Կրիշնան խօսեց.

*Աշխարհումս երկու տեսակ կեանք կայ, որոնց մասին ես արդէն խօսել եմ. Սանքեաների համար գիտութեան* Եօգա. *և* Եօգի*ների* [1]) *համար գործի* Եօգա։

*Ոչ մի գործ չգործելով՝ մարդ անգործ չի լինիլ. ոչ էլ հրաժարումով կեանքի նպատակին կարելի է հասնել։*

*Որովհետև ոչ մի էակ, մինչև իսկ մի ակնթարթ, չի մնում անգործ. գործում է նա ակամայ իր մարմնի ֆունկցիաներով։*

---

1) Մարդկային հոգու վերջնական ձուլումը Աստուծոյ հոգու մէջ։

Ով զգայարանների գործունէութիւնը նուաճելով՝ մնում է անգործ, բայց միտքն զբաղուած զգայական առարկաներով և խորհուրդները ցրուած, նա կեղծ բարեպաշտ է կոչւում:

Բայց նա, որ զգայութիւնները մտքով նուաճելով՝ բանացնում է զգայարանների գործունէութիւնը բարի գործի համար՝ ինքը քաշուած մնալով, նրան յարգում են:

Գործի՛ր ուրեմն օգտակար գործը. որովհետև գործն աւելի բարձր է անգործութիւնից. քո մարմինն անգամ դու չես կարող սնուցանել անգործութեամբ:

Բացի սուրբ գործից՝ աշխարհը մեզ կապում է նաև ուրիշ գործերով. այդ գործը՝ ազատ ցանկութիւններից՝ գործի՛ր ուրեմն, ո՛վ Կունտիի որդի:

Երբ զոհաբերութեամբ արարածներին ստեղծեց Արարչապետը՝ ասաց նրանց. «նրանով բազմացէք. դա թող լինի առատութեան հորթը:

«Աստուածներին սնուցէք նրանով և թող Աստուածները սնուցանեն ձեզ. այս փոխադարձ սնուցումներով գերագոյն բարիքը պիտի գտնէք:

«Սնանելով զոհաբերութեամբ՝ Աստուածները ձեզ պիտի տան հարկաւոր սնունդը. ով ուտում է աստուածատուր սնունդը՝ նրանց մաս չհանած, նա գող է:

«Ովքեր զոհի մնացորդներն են ուտում, արձակւում են իրանց մեղքերից. իսկ չարագործները՝ որ սնունդ են պատրաստում միայն իրենց համար, մեղքով են սնանում»:

Արարածներն ապրում են բերքերից և բերքերը ծնում են անձրևից. անձրևը գալիս է զոհաբերութիւնից և զոհաբերութիւնը կատարւում է գործողութեամբ:

Գիտցի՛ր թէ գործողութիւնը ծնում է Բրահմայից և Բրահման Յաւիտենականից. ուստի ամենուրեքն Բրահմա միշտ զոհաբերութեան ներկայ է:

Ով կենաց շրջանառութեան չի գործակցում աշխարհի մէջ, և մեղքերով է ճաշակում զգայութեանց հաճոյքը, նա զուր է ապրում:

Բայց նա որ երջանիկ է ու գոհունակ իւր հոգու մէջ, իւր հոգու մէջ էլ գտնում է իր ուրախութիւնը և չի արհամարհում ոչ մի գործ:

Գործի կատարուելը կամ չկատարուելը իր հոգը չէ. և ոչ մի էակից նա օգնութիւն չի սպասում:

Ուրեմն միշտ քաշուած՝ կատարի՛ր քո գործը. որովհետև

---

1) Եօգա արած, Եօգային հետևող անձ

հրաժարմամբ կատարելով գործը՝ մարդ հասնում է գերագոյն նպատակին։

Ջանական և ուրիշները գործով հասան կատարելութեան. եթէ դու նկատես գործերի ամբողջութիւնը, կը պարտաւորուիս գործել։

Ինչ ձևով գործում է մի նշանաւոր մարդ, նոյն ձևով գործում է մարդոց մնացեալ մասը. նա օրինակ է տալիս, աշխարհ նրան հետևում է։

Ես էլ անելու ոչինչ չունիմ երեք աշխարհների մէջ և ոչ էլ ստանալու մի նոր բան, բայց գործում եմ։

Որովհետև եթէ ես չգործէի անդրդուելի գործունէութեամբ, բոլոր մարդիկ՝ որ հետևում են իմ ճանապարհին, պիտի կորչէին այս աշխարհի մէջ. եթէ ես չկատարէի իմ գործը, քաօս պիտի կազմէի և այդ արարածները պիտի ջնջուէին։

Ինչպէս որ տգէտները միացած են միմեանց գործով, նոյնպէս թող իմաստունը գործի՝ հրաժարուած աշխարհից, կազմելու համար աշխարհի կարգը։

Թող անհամաձայնութիւններ չծնուցանէ իրենց գործին նուիրուած տգէտների մէջ, այլ սիրեցնէ աշխատութիւնը՝ անձնատուր լինելով ու միանալով նրանց։

Բոլոր կարելի գործերը առաջանում են կենդանի էակների բնական ստորոգելիքներից. մեծամիտը միայն կասի. «Այդ գործը ես եմ արել»։

Բայց արդարախոհ անձը, որ զանազանում է ստորոգելիքն ու գործողութիւնը, ասում է. «Ստորոգելիքը ստորոգելիքին է վերաբերում», և հրաժարւում է։

Նիւթի ստորոգելիքներով այլայլուած մարդիկ յարում են ստորոգելիքների գործողութեան. սոքա ընդհանուրը չգիտցող ծանր ուղեղներ են. ով իմանում է՝ թող չխախտէ նրանց։

Բոլոր գործերը ինձ վերագրիր, մտածիր գերագոյն հոգու վրայ. և անյոյս ու անհոգ կռուիր առանց տխրութեան։

Այն մարդիկ, որ հետևում են իմ հրամանիս հաւատքով ու անտրտունջ, ազատւում են նոքա էլ գործերի կապերից։

Բայց նոքա, որ տրտնջալով չեն հետևում իմ հրամանիս, իմացիր թէ զուրկ են ամէն գիտութիւնից և կորչում են անմիտ կերպով։

Իմաստունը ձգտում է իր բնութեան համաձայնող գիտութեան. անասուններն էլ իրենց. ով կարող է հակառակը գործել։

Զգայական առարկաները զգայարաններին տալիս են

*ցանկութիւն կամ զզուանք. բայց իմաստունը չի հպատակում նրանց, որովհետև նոքա իր թշնամիներն են:*

*Լաւագոյն է սեպհական անկատար օրէնքը օտարի կատարեալ օրէնքից. լաւագոյն է մեռնել սեպհական օրէնքով. օտար օրէնքը վտանգաւոր է:*

Արջունեան խօսեց.

*Ինչո՞վ գնում է մարդ մեղքի մէջ ակամայօրէն իբր մղուած օտար ուժից:*

Կրիշնեան խօսեց.

*Դա սէրն է, դա կիրքն է՝ ծնուած տարտարոսից, գիշատիչ և մեղսալից. գիտցիր՝ որ նա թշնամի է աշխարհում:*

*Ինչպէս ծուխը ծածկում է բոցը և ժանգը հայելին, ինչպէս արգանդը պատում է սաղմը, այնպէս և նա պատում է այս աշխարհը:*

*Իմաստութիւնը ծածկւում է նրանով. իմաստունի յաւիտենական թշնամին է. անյագ բոցի պէս նա ձևափոխւում է ըստ հաճոյս:*

*Զգայարանները, միտքը, բանականութիւնը նորա բնակարաններն են կոչւում. սոցանով մթագնում է գիտութիւնը և բանականութիւնը:*

*Ուստի քո զգայարանները հենց սկզբից ընկճիր, ո՛վ Բհա՛րատայի գերագոյն որդի, և ջնջիր այս մեղապարտին, որ վնասում է գիտութեան և դատողութեան:*

*Զգայարանները հզօր են, ասում են. զգայարաններից աւելի հզօր է միտքը, մտքից աւելի հզօր է բանականութիւնը. բայց բանականութիւնից աւելի հզօրը նա է:*

*Նրան բանականութիւնից աւելի հզօր իմանալով, զօրացրո՛ւ հոգիդ քո մէջ և սպանի՛ր թշնամուն, որ զանազանակերպ է և դժուարամատչելի:*

Այստեղ վերջանում է Բհագավադգի՛տա՛յի երրորդ գլուխը, որի անունն է գործի Եօգա:

---

Դ.

Կրիշնեան խօսեց.

*Այս յաւիտենական Եօգան սովորեցրի նախ Վիվասվատին. Վիվասվատը սովորեցրեց Մանուին. Մանուն պատմեց Իկշվա՛կուին:*

*Այսպէս փոխանակի անցնելով Արքայական Իմաստունները սովորեցին. բայց դարերի ընթացքում Եօգան մոռացուեց:*

*Նոյնը ես այժմ քե՛զ եմ սովորեցնում, այդ հին մոռաց-*

*ցուցած Եօգան. «Իմ ծառան ես դու և իմ բարեկամը» ասացի ես: Գերագոյն գաղտնիք է սա:*

Արջունան խօսեց.

*Յետնագոյն է քո ծնունդը. Վիվասվատի ծնունդը կանխագոյն է. Ինչպէս հասկանալ քեզ, երբ ասում ես «նախ սովորեցրի Վիվասվատին»:*

Կրիշնան խօսեց.

*Բազմաթիւ են իմ ծնունդները. քոնն էլ, ո՛վ Արջունա. բայց ես նրանք բոլորը գիտեմ, միայն դու չգիտես:*

*Թէև անսկիզբն և անվախճան, արարածների տէրն եմ ես, բայց իշխան իմ սեպհական էութեան, ծնւում եմ խորհրդաւոր զօրութեամբ:*

*Ամէն անգամ երբ արդարութիւնը նուազում է և անարդարութիւնը գլուխ է բարձրացնում, այն ժամանակ մարմին եմ զգենում:*

*Եւ բարիների պաշտպանութեան, չարերի հալածման և արդարութեան վերականգման համար ծնւում եմ դարից դար:*

*Իմ աստուածային ծնունդն ու գործը ով իմանում է, նա թողնելով մարմինը՝ նոր ծնունդի չի դիմանում. ինձ է գալիս, ո՛վ Արջունա:*

*Ազատ ցանկութիւնից, երկիւղից և կրքից, բարեպաշտ ու հաւատացած ինձ, շատերը գիտութեան ապաշխարութեամբ մաքրուած, միանում են իմ էութեան:*

*Որովհետև որոնք խոնարհում են իմ առաջ, նրանց յարգում եմ ես: Իմ ճանապարհին հետևում են բոլոր մարդիկ:*

*Ովքեր ցանկանում են գործերի վարձատրութեան, զոհում են աստուածներին. և շուտով այս մահկանացու աշխարհի մէջ ստանում են իրենց վարձը:*

*Չորս դասակարգերն ինձանից ստեղծուեցան և իրենց յատկութիւններն ու պաշտօններն ստացան. իմացի՛ր թէ նոքա իմ գործն են, ես որ անգործ եմ և անայլայլ:*

*Ինձ չեն ապականում գործերը, որովհետև ոչ մի պտուղ չունին ինձ համար. ով ինձ այսպէս է ընդունում, գործերով չէ կաշկանդւում:*

*Գիտենալով թէ իմաստուններն էլ կատարել են իրենց գործը ազատութեան ցանկութեամբ, կատարի՛ր դու էլ այն գործը, որ իմաստունները ժամանակին կատարել են:*

*«Ի՞նչ է գործը. ի՞նչ է դադարը» ասում ես: Բանաստեղծներն անգամ այս բանում դժուարացել են: Գործը ես քեզ կուսուցանեմ, և երբ դու կիմանաս՝ կազատուիս չարիքից:*

Պէտք է գիտենալ գործը, պէտք է գիտենալ դադարը, պէտք է գիտենալ անգործութիւնը. դժուարըմբռնելի է գործի ընթացքը:

Ով գործի մէջ անգործութիւն է տեսնում, և ով անգործութեան մէջ գործ է տեսնում, նա իմաստուն է մարդկանց մէջ. նա Եօգայի մէջ է, գործի՝ թէ չգործի:

Եթէ իր բոլոր ձեռնարկութիւնները ցանկութեան ներշնչումներից զերծ են, իբր թէ գիտութեան կրակով այրած լինէր գործը, նրան իմաստուն են կոչում գիտունները:

Ով թողել է գործի վարձատրութեան ցանկութիւնը, և մշտագոհ է ու աննախանձ, եթէ գործով զբաղուած էլ լինի, ոչինչ չի գործում նա։

Անյոյս, անձնիշխան, նպատակամերժ, մարմնով միայն գործ գործելով, նա չի մտնիլ մեղքի մէջ:

Ամէն պատահածից գոհունակ, սիրուց և ատելութիւնից բարձր, անցանկասէր, անփոյթ յաջողութեան և անյաջողութեան մէջ, գործելիս անգամ կապուած չէ գործին:

Ցանկութիւնները վանած, ազատ, գիտութեան անձնատուր և զոհաբերութեամբ ընթացող մարդու համար գործն ամբողջովին հալւում է:

Աստուած է նուիրաբերութիւնը. Աստուած է օծութեան իւղը. Աստուած է կրակը. Աստուած է զոհը. Աստուծուն կը գնայ նա, որ Աստուծոյ՝ վերայ է մտածում գործի մէջ:

Եօգիներից ոմանք մասնակցում են Աստուածների զոհին. ուրիշներ Բրահմանական կրակի մէջ զոհաբերում են հենց զոհը:

Ոմանք ողջախոհութեան կրակի մէջ լսողական և այլ զգայարաններն են զոհաբերում, ուրիշներ զգայութեանց կրակի մէջ ձայնը և ուրիշ զգայական առարկաներ են զոհաբերում:

Ոմանք կենսական և զգայական բոլոր գործօնները զոհաբերում են ողջախոհութեան Եօգայի կրակի մէջ, որ վառում է գիտութիւնը:

Ոմանք զոհաբերում են հարստութիւն, բարեպաշտութիւն, ջերմեռանդութիւն, ընթերցում, գիտութիւն, ժուժկալութիւն, ճգնակեցութիւն:

Ոմանք արտաշնչութեան մէջ զոհաբերում են ներշնչութիւնը, և ներշնչութեան մէջ արտաշնչութիւնը, և ներշնչութեան ու արտաշնչութեան ճանապարհը փակելով, բռնում են շնչառութիւնը [1]:

---

1) Շնչառութիւնը ըստ կարելւոյն ուշացնելով անձը նեղելու ճրգնական գործ.

*Ոմանք անսուաղութեամբ կեանքի պիտոյքները զոհաբերում են կեանքի պիտոյքների մէջ։ Սորա բոլոր զոհի գիտուններ են և զոհաբերութեամբ ջնջում են մեղքերը։*

*Ովքեր ուտում են անմահութեան կերակուր զոհի մնացորդները՝ գնում են Յաւիտենական Բրահմայի մօտ. բայց ով չի զոհաբերում՝ նա այս աշխարհումն էլ տեղ չունի, ո՞ւր մնաց միւսում։*

*Այս զանազան զոհերը հաստատուած են Բրահմայի բերանից. գիտցիր որ նրանք բոլորը գործի ծնունդ են. և այս գիտենալով դու կը փրկուիս։*

*Լաւագոյն է գիտութեան զոհաբերութիւնը հարստութեան զոհաբերութիւնից. բոլոր գործերի կատարելութիւնը գիտութեան մէջ է բովանդակւում։*

*Գիտցի՛ր որ սա ստացւում է պատուելով, հարցափորձելով ծառայելով. գիտունները՝ որ տեսնում են ճշմարտութիւնը, քեզ գիտութիւն պիտի սովորեցնեն։*

*Գիտութեամբ այլ ևս տկարութիւն չպիտի զգաս. նրանով դու պիտի տեսնես բոլոր արարածներին հոգու մէջ և յետոյ իմ մէջ։*

*Եթէ դու բոլոր մեղաւորներից աւելի մեղաւոր լինիս, գիտութեան նաւով բոլոր մեղքերը պիտի անցնիս։*

*Ինչպէս վառուած կրակը փայտը մոխիր է դարձնում, այսպէս էլ գիտութեան կրակը բոլոր գործերը աճիւն է դարձնում։*

*Որովհետև գիտութեան նման օրհնեալ ջուր չկայ։ Ով իրան Եօգայով կատարելագործում է, ժամանակին կը գտնի գիտութիւնը իր հոգու մէջ։*

*Հաւատացեալը ստանում է գիտութիւն, երբ անձնատուր է նրան և տէր իր զգայարաններին. գիտութիւն ստանալով՝ շուտով կը հասնի երանութեան։*

*Բայց տգէտն ու անհաւատը երկբայութեամբ կորչում են, որովհետև ո՛չ այս աշխարհը, ո՛չ հանդերձեալը, ո՛չ երջանկութիւնը երկբայողի համար չեն։*

*Ով Եօգայով անջատուած է գործերից, ով գիտութեամբ երկբայութիւնը փարատել է, նա անկախ է և գործով չէ կապուած։*

*Ուրեմն տգիտութիւնից ծնած և սրտում բնակող այս երկբայութիւնը կտրի՛ր գիտութեան սրով. դէպի Եօգան գնա. վե՛ր կաց։*

Այստեղ վերջանում է Բհագավադգի՛տա՛յի չորրորդ գլուխը՝ որի անունն է գիտութեան Եօգա։

## Ե.

Արջունեան խօսից.

Մի կողմից դու գովում ես գործերից հրաժարումը, ո՛վ Կրիշնա, միւս կողմից Եօգան. ո՞րն է լաւագոյնը այս երկուսից. ասա ինձ պարզորոշ։

Կրիշնեան խօսեց.

Հրաժարումը և գործերի Եօգան երջանկութիւն են տալիս երկուսն էլ. բայց գործերի հրաժարումից աւելի լաւ է գործերի Եօգան։

Յարատև է հրաժարման մէջ նա, որ ոչ ատում է, ոչ ցանկանում. ով ազատ է այս երկուսից՝ հեշտութեամբ կապատուի կապանքից։

Սանքիան ու Եօգան բաժանում են մանուկները, բայց ոչ իմաստունները. ով նուիրւում է մէկին, գտնում է միւսի պտուղը։

Այն կայանը, ուր Սանքիայով հասնում են, կարելի է նաև Եօգայով հասնել. և ով Սանքիան ու Եօգան նոյն է տեսնում, լաւ է տեսնում։

Բայց հրաժարմամբ դժուար է հասնել առանց Եօգայի. իսկ Եօգային յարած մենակեացը շուտով Բրահմային կը հասնի։

Յարած Եօգային, հոգին մաքրած, նուաճած անձն ու զգայարանները, ապրելով համայն էակների կեանքով, գործելիս նա չի պղծուիլ։

«Ես չեմ որ գործում եմ». այսպէս պիտի մտածէ ճշմարտաճանաչ Եօգին, նայելիս, լսելիս, շօշափելիս, հոտոտելիս, ուտելիս, գնալիս, քնելիս, շնչելիս,

Խօսելիս, տալիս, առնելիս, աչքը բանալիս ու փակելիս։ «Զգայարանները զգայական առարկաների համար են շինուած». այսպէս պիտի ասի նա։

Ով ցանկութիւնները թողնելով գործում է Աստուծոյ համար, նա չի պղծւում մեղքով, ինչպէս lotus ի [1]) տերևը ջրով։

Մարմնով, մտքով, բանականութեամբ ու զգայարաններով՝ Եօգիները գործում են գործը, ցանկութիւնները թողած՝ հոգու սրբագործութեան համար։

Եօգայով՝ գործերի պտուղը թողած, հասնում են գերագոյն երանութեան. առանց Եօգայի ով գործերի պտղին է սպասում՝ կաշկանդւում է ցանկութեան զօրութեամբ։

Ով բոլոր գործերից մտքով հրաժարւում է՝ նա անդորր ու հզօր բնակւում է ինն դռնով քաղաքի [2]) մէջ, առանց գոր-

---

1) Lotus Հնդկաց սիրելի ծաղիկն է.

2) Մարմինն որ ունի ինն ծակ.

ծելու եաւանց գործել տալու։

Թէ գործունէութիւնը, թէ գործը աշխարհի տիրող ստեղծածը չեն, ոչ էլ գործի պտուղը վայելելու ցանկութիւնը. անհատականութիւնն է գոյացրել նրանց։

Տէրը չի վերցնում մէկի մեղքը և ոչ բարի գործը. տգիտութեամբ ծածկուած է գիտութիւնը և այսպէս թափառում են էակները։

Բայց նրանք, որոնց մէջ հոգին գիտութեամբ տգիտութիւնը ջնջել է, նրանց մէջ Արեգակի պէս լուսաւորում է գիտութիւնը Գերագոյն էակին։

Նրան մտածելով, Նրան էակցելով, Նրա մէջ բնակելով ու Նրան նուիրուելով՝ գնում են անդառնալի՝ գիտութեամբ մեղքերից ազատուած։

Գիտուն ու համեստ Բրահմանի, եզան, փղի, նոյն իսկ շան, նոյն իսկ շան միս ուտողի մէջ իմաստունները տեսնում են նոյնին [1]։

Աշխարհի մէջ նրանք են յաղթել բնութեան, որոնց մէջ միտքը հաստատ մնում է նոյնութեան մէջ. որովհետև անմեղանչական է նոյնն Աստուած, ուստի Աստուծոյ մէջ մնում են հաստատ։

Նա չի ուրախանում հաճելի դէպքով, նա չի տխրում անհաճոյ դէպքով. հաստատամիտ, անդրդուելի, Աստուածախորհ, Աստուծոյ մէջ հաստատուած,

Արտաքին շփումներից ազատ, նա գտնում է իր մէջ երջանկութիւնը. ով Աստուծուն է միացել Եօգայով՝ անկորուստ երանութիւնն է վայելում։

Որովհետև շփումներից ծնած հաճոյքները ցաւ են առաջացնում և սկիզբ ու վերջ ունին, ո՛վ Կունտիի որդի. նոցա մէջ չի հրճւում իմաստունը։

Ով դիմադրում է այս աշխարհում, մարմնից դուրս գալուց առաջ, ցանկութեան և կրքի հարուածներին, նա Եօգի է, նա երջանիկ է։

Ով իրա մէջ գտնում է իր երջանկութիւնը, իր ուրախութիւնը և իր լոյսը, նա Եօգի է, որ գնում է Բրահմայի Նիրվանային, Բրահմայի էութեան։

Այսպէս խառնւում են Բրահմայի Նիրվանայի մէջ իմաստունները՝ որոնց մեղքերը քաւուած են, միտքն անբաժան, ինքնիշխան և համայն էակների լաւութեամբ ուրախ։

Սիրուց և ատելութիւնից ազատուած, անձը և միտքը նուաճած, ինքնաճանաչ մարդը մօտ է Բրահմայի Նիրվանային։

Երբ շփումից առաջացած զգայութիւնները վանել է

1) Այսինքն Աստուած Համատարածութեան գաղափարով.

*մարդ, աչքը ուղղել է դէպի առաջ, կանոնաւորել է շնչառա-տրութիւնը և կրծքի ելևէջը,*

*Զսպել է զգայարանները, միտքը, բանականութիւնը, ազատել է իրան սրանցից, վանել է իղձը, երկիւղը և կիրքը, նա հասնում է ազատութեան։*

*Եւ իմանում է թէ Ես եմ ընդունում զոհը, ապաշխարութիւնը, Ես եմ Տիեզերքի տէրը, բոլոր արարածների բարեկամը, այն ժամանակ նա ստանում է երջանկութիւնը։*

**Այստեղ վերջանում է բհագավադգի՛տա՛յի հինգերորդ գլուխը, որի անունն է գործերից հրաժարման Եօգա։**

---

## Զ.

Կրիշնան խօսեց.

*Նա՝ որ առանց ակնկալելու գործերի վարձատրութեանը՝ կատարում է որոշուած գործը, նա Անձնուրաց է, նա Եօգի է․ բայց ոչ նա՝ որ մոռանում է Սրբազան կրակը և սուրբ գործը։*

*Ինչ որ Անձնուրացութիւն են կոչում, գիտցիր, ո՜վ Պա՛նդուի որդի, թէ Եօգան է, որովհետև առանց Անձնուրացութեան Եօգի չի լինիլ ոչ ոք։*

*Եօգային ձգտող մենակեացի համար գործը օգնական է․ և երբ նա հասնում է Եօգային, հանգիստը նրա օգնականն է։*

*Որովհետև նա ոչ զգայարաններին և ոչ գործերին է յարում, և բոլորովին անձնազոհ է, ուրեմն հասել է իսկապէս Եօգային։*

*Թող ինքն իրան բարձրացնի և ոչ թէ ինքն իրան ցածացնի․ որովհետև միտքը մարդու թէ բարեկամն է և թէ թշնամին։*

*Բարեկամ է միտքը այն անձի համար, որ ինքը իր անձին յաղթել է․ բայց իբրև թշնամի ոչ-մտաւոր բաների, միտքը կարող է նաև դառնալ թշնամի։*

*Անձնիշխան և անդորր մարդու հոգին բնակւում է ամփոփուած ցրտի և տաքի, հաճոյքի և ցաւի, պատուի և նախատանքի մէջտեղ։*

*Նա՝ որի միտքը հաճոյք է գտնում գիտութեան և ուսման մէջ, որի հոգին բարձր է, որ նուաճել է զգայարանները, որի համար հաւասար են գայլախազը, հողի կտորը և ոսկին, նա Եօգի է, որովհետև հոգեպէս միացած է։*

*Ով որ բարեկամներին, մտերիմներին, թշնամիներին, անտարբերներին, օտարներին, ատելիներին, ազգականներին,*

բարիներին և մեղաւորներին նոյն աչքով է նայում, նրան յարգում են։

Եօգին Թող գործադրէ ուրեմն միշտ իր ջերմեռանդութիւնը, մենակ մեկուսացած, առանձնակի, անձնիշխան և անյոյս:

Մաքուր մի տեղում Թող պատրաստի իրա համար մի հաստատուն նստարան, ոչ շատ բարձր, ոչ շատ ցածր, խոտից, կաշւից և մորթից:

Այնտեղ՝ դէպի միութիւնն յառած միտքը, զսպած զգայարանները և գործունէութիւնը, նստած նստարանի վրայ՝ Թող միանայ եօգային իր հոգու սրբագործութեան համար։

Ամբողջ մարմինը, գլուխը, վիզը պահած հաւասարակշռութեան մէջ, անշարժ, հայեացքն ուղղած իր առաջ, առանց ուրիշ կողմ շարժելու։

Հոգին երանեալ, երկիւղից ազատ, նորընծայի պէս ուխտապահ, իշխան իր մտքին, Թող նստի եօգին յանուն իմ։

Այսպէս միշտ հոգին միացրած, միտքը նուաճած՝ եօգին կը գնայ երանութեան, նիրվանայի մէջ հալուելու, իմ մէջ բնակուելու։

Եօգան նրանը չէ, ով շատ է ուտում կամ ոչինչ չէ ուտում, ով շատ է քնում կամ միշտ արթուն է։

Չարիքները ջնջող եօգան նրանն է՝ ով չափաւոր ուտում է և քաղցում, չափաւոր գործում ու հանգստանում, չափաւոր քնում և արթուն մնում։

Երբ իր լիովին նուաճած միտքը իր վրայ է հաստատում, և ազատ է ամեն ցանկութիւններից, այն ժամանակ նրան կոչում են եօգի:

Եօգին քամուց ազատ մի ճրագ է, որ չի տատանւում, երբ նուաճած իր միտքը՝ անձնատուր է լինում եօգային։

Երբ եօգայով կապուած միտքը վայելում է անդորրութիւնը, երբ հոգին իրա վրայ նայելով իր մէջ հրճւում է.

Երբ ճաշակում է այն անհուն ուրախութիւնը որ, 'գիտութիւնն է տալիս և զգայութիւններից աւելի բարձր է, երբ առանց տատանուելու յարում է գերագոյն էութեան։

Երբ ստանալով նրան՝ զգում է Թէ ոչ մի ուրիշ ստացում հաւասար չէ նրան, և երբ նրան միանալով սաստիկ ցաւով էլ չի բաժանւում նրանից:

Թող իմանայ Թէ ցաւի հետ յարաբերութեանց այս խզումը եօգա է կոչւում: Այս եօգան պիտի կատարուի հաստատակամ ու մտասոյզ:

Երևակայութիւնից առաջացած ցանկութիւնները Թողնե-

լով բոլորովին, մտքով նուաճելով ամէն կողմից եկած զգա-յութեանց խռնութիւնը:

Տակաւ առ տակաւ թող հասնի անդորրութեան՝ յարատեւ հաստատուն բանականութեամբ. և իր մէջ ամփոփուած միտ-քը ուրիշ բանի մասին չմտածէ:

Եւ ամէն անգամ, որ իր անհաստատ և դեղևոտ միտքը ուրիշ տեղեր թափառի, թող սանձահարի նրան և հնազանդեցնի:

Գերագոյն երջանկութիւնը թափանցում է Եօգիի մէջ, երանեալ մտքով, կրքերից անդորր, Աստուած դառած, անարատ:

Միշտ Եօգա կատարելով Եօգին մաքրուած արատներից, Աստուծոյ հետ հաղորդակցութեամբ անհուն երանութիւնն է վայելում:

Համայն էակների մէջ բնակուած հոգուն և հոգու մէջ համայն էակներին է տեսնում, երբ իր հոգին Եօգայով միա-ցած է և ամէն տեղ նոյնին է տեսնում:

Ով ինձ է տեսնում ամէն տեղ, և ամեն բան իմ մէջ է տեսնում, նա ինձ չի կորցնում, նա ինձ համար չի կորչում:

Ով պաշտում է ինձ՝ համայն էակների մէջ բնակուածիս և միութեան մէջ հաստատուն է, ամէն դրութեան մէջ էլ, նա Եօգիով ինձ է միացած:

Ով իր անձի նմանութեամբ ամէն տեղ նոյնին է տեսնում, երջանիկ թէ դժբախտ, նա ընտիր Եօգի է:

Արջունեան խօսեց.

Ո՜վ Մադհուի սպանողը, ես չեմ կարծում՝ որ մտքի ան-հաստատութիւնը մի հաստատուն կայան թողնի այս Եօգա-յին, որ դու դնում ես համանմանութեան մէջ:

Որովհետև դեղևոտ է միտքը, ո՛վ Կրիշնա, յարափոփոխ, ուժեղ ու հզօր. ինձ թուում է այնքան անընկճելի՝ ինչքան քամին:

Կրիշնան խօսեց.

Անտարակոյս, ո՛վ դիւցազն, միտքը անզուսպ, յարափո-փոխ է. բայց ճգնութեամբ և կրքերի արտաքսումով զսպւում է:

Ով չի նուաճել իր անձը՝ նրան դժուար է հասնել Եօգա-յին. այսպէս եմ մտածում ես. սակայն ով սանձել է իրեն, կարող է հասնել նրան:

Արջունեան խօսեց.

Անանձնիշխան, բայց հաւատացեալ, միտքը Եօգայից հե-

ռացած և Եօգայի կատարելութեան չհասած անձը ո՞ր ճանապարհն է գնում, ո՛վ Կրիշնա:

Արդեօք երկու կողմից վտարուելով պատառուած ամպի պէս անհետանո՞ւմ է, անկայուն, հեռու Բրահմայի ճանապարհից:

Այս իմ տարակոյսը, ո՛վ Կրիշնա, հաճի՛ր փարատել լիովին. բացի քեզանից չկայ մէկը, որ կարենար այս տարակոյսս փարատել:

### Կրիշնան խօսեց.

Ո՜վ Պրիթայի որդի, ոչ այս աշխարհում, ոչ հանդերձեալում նա չի կարող անհետանալ. որովհետև ոչ մի բարեգործ մա՛րդ չի գնում բնաւ թշուառ ճանապարհը:

Հասնելով քաւեալների աշխարհը, բնակելով այնտեղ երկար տարիներ, նորից ծնւում է քաւեալների և երջանիկների մի ընտանիքում:

Կամ մինչև իսկ Եօգա կատարող իմաստունների ընտանիքում. շատ դժուար է աշխարհում այսպիսի ծնունդ ձեռք բերել:

Այստեղ վերստանում է իր նախկին բարեպաշտական ճըգնութիւնները և աւելի է ձգտում դէպի կատարելագործութիւն:

Որովհետև իր նախկին կրթութիւնը քաշում է նրան ակամայ, մինչև իսկ եթէ Եօգայի հասնելու ցանկութեան մէջ շեղուի բրահմանական վարդապետութիւնից:

Ճիգով նուաճած իր միտքը, Եօգին՝ իր ապականութիւններից սրբուած, մէկից աւելի ծնունդներով կատարելագործուած գնում է վերջապէս գերագոյն ճանապարհը:

Եօգին այն ժամանակ գերագոյն է ճգնաւորներից, գերագոյն է իմաստուններից, գերագոյն է գործի մարդկանցից: Ուրեմն Եօգի՛ եղիր, ո՛վ Արջունա:

Բոլոր Եօգիների մէջ, ով ինձ է գալիս իր սրտում, հաւատքով պաշտում է ինձ, նա ինձ համար գերագոյն Եօգին է:

Այստեղ վերջանում է Բհագավադգի՛տայի վեցերորդ գլուխը, որի անունն է ինքնանուաճման Եօգա:

## Է.

### Կրիշնան խօսեց.

Իմ վերայ յառելով միտքդ, Եօգա կատարելով, ինձ ուշադիր լինելով՝ լիովին ու ակներև ի՞նչպէս պիտի ճանաչես ինձ. ա՛յդ լսիր այժմ։

Այս գիտութիւնն իր ստորաբաժանումներով պիտի սովորեցնեմ քեզ, որը սովորելուց յետոյ՝ աշխարհում այլ ևս ոչինչ չի մնում սովորելու։

Հազարաւոր մարդկանց մէջ ոմա՛նք միայն ձգտում են կատարելագործութեան. և այդ կատարելագործեալ իմաստունների մէջ հազիւ մէկը ինձ ճանաչում է էութեամբս։

Հողը, ջուրը, կրակը, քամին, օդը, միտքը, բանականութիւնը և Եսը. ահա իմ էութիւնը բաժանուած ութը տարրերի։

Սա ստորինն է։ Այժմ ճանաչիր իմ միւս գերագոյն էութիւնը, որ կեանքի սկզբունքն է և որով աշխարհը մնում է։

Իւր ծոցումն են բնակւում համայն էակները. Ես եմ Տիեզերքի արարչութեան գոյութիւնը և լուծումը։

Ինձանից բարձր չկայ ոչ ոք. ինձանից է կախուած ամբողջ այս տիեզերքը՝ ինչպէս մարգարտի շարքերը թելի վրայ։

Քաղցրութիւնն եմ ես ջրերի մէջ, լոյսն իմ Լուսնի և Արեգակի մէջ, օրհներգն եմ բոլոր Վեդաների մէջ, ձայնը օդի մէջ, առնականութիւնը մարդու մէջ։

Մաքուր բոյրը հողի մէջ, շողքն եմ ես կրակի մէջ, կեանքը համայն էակների մէջ, ճգնութիւնն եմ ճգնաւորների մէջ։

Գիտցի՛ր, ով Պրիթա՛յի որդի, թէ ես համայն էակների սերմն եմ անսպառելի, իմաստունների իմաստութիւնն եմ, արիների արիութիւնն եմ։

Հզօրների զօրութիւնն եմ ես՝ կրքից ու ցանկութիւններից ազատ, կենդանի էակների մէջ օրինական սէրն եմ։

Ճշմարտութիւնը, կիրքը և խաւարը գիտցի՛ր թէ ինձանից են. բայց ես նոցա մէջ չեմ, այլ նոքա իմ մէջ։

Այս երեք որակութեանց եղանակաւորութիւններով ամբողջ աշխարհը պղտորուած՝ չի ճանաչում ինձ իբր նոցա գերագոյնը և անջնջելի։

Իւրերի եղանակաւորութեանց այս դիւթութիւնը դժուարանցանելի է. ովքեր ինձ հետևում են, ազատւում են նրանցից։

Բայց չարագործները և պղտոր հոգիները չեն կարող ինձ հետևել, ոչ էլ ստորին մարդիկ՝ որոնք խաբւում են հեշտութիւնից և սատանայի բնութիւնից են։

Չորս դաս բարեգործ մարդիկ պաշտում են ինձ, ո՛վ Արջունա.—տառապեալը, ուսումնասէրը, ընչասէրը և իմաստունը։

Սոցա մէջ իմաստունն է, որ միշտ Եօգայի մէջ, յարած միակ պաշտամունքի, գերազանցում է բոլորին։ Իմաստունի համար ամէնից աւելի սիրելին ես եմ, և նա իմ սիրելին է։

Բարի են բոլոր այս ծառաները. բայց իմաստունը հոգով աստուած է, որովհետև մտաւոր Եօգայի մէջ նա հետևում է ինձ իբրև վերջին ճանապարհ։

Բազմաթիւ ծնունդներից յետոյ իմաստունը ինձ է գալիս։ Ով ասում է «Վասուդէվան տիեզերքն է», նա չի ըմբռնում Գերագոյն Հոգուն։

Նոքա՝ որոնց միտքը խաբուած է ցանկութիւններից, դիմում են այլ աստուածութիւնների. նոքա հետևում են իրենց պաշտամունքին, կապուած իրենց բնաւորութեամբ։

Ով էլ լինի այն աստուածային անձը՝ որին մի մարդ ցանկանում է նուիրել իր հաւատքը, ես այդ հաւատքը անդրդուելի եմ դարձնում նրա մէջ։

Եւ նա հաւատքով միացած՝ նրան ծառայել է աշխատում, և ստանում է ցանկալի բարիքները՝ որ ես եմ բաշխում։

Բայց սահմանափակ է այս սակաւամիտ մարդոց վարձատրութիւնը, ովքեր աստուածներին են զոհում՝ աստուածներին են գնում. բայց ովքեր ինձ են պաշտում, ինձ են գալիս։

Ինձ՝ Անտեսանելուս տեսանելի են կարծում անգիտաբար տգէտները. իմ գերագոյն էութիւնը չեն ճանաչում նոքա՝ անայլայլ ու վեհագոյն։

Ես չեմ երևում բոլորին և Եօգայի դիւթութեամբ միայն բացւում եմ. ապականեալ աշխարհը չի ճանաչում ինձ՝ որ անծին եմ ու անեղծ։

Ճանաչում եմ ես անցեալ, ներկայ և ապագայ էակներին, ո՛վ Արջունա. բայց ինձ չի ճանաչում ոչ ոք։

Ցանկութեամբ կամ զզուանքով պղտորուած՝ բոլոր էակներն այս աշխարհում դէպի մեղքն են գնում։

Բայց նոքա որ ջնջել են իրենց մեղքերը գործերի մաքրութեամբ, մեղքի ապականութիւնից ազատուած պաշտում են ինձ յարատևութեամբ։

Ովքեր ծերութիւնից և մահուանից ազատութիւնը իմ մէջ փնտռելով ինձ են ապաստանում, նոքա ճանաչում են Բրահմային, Գերագոյն հոգուն և գործը ամբողջապէս։

Եւ ովքեր ինձ ճանաչում են իբր Առաջին Կենդանի էակ,

Սկզբնական Աստուածութիւն և Առաջին զոհ, նրա վերջին օրը կը տեսնեն ինձ մտքով միացած։

Այս տեղ վերջանում է Բհագավադգի՛դա՛յի եօթներորդ գլուխը, որի անունն է ծանօթութեան Եօգա։

---

## Ը.

### Արջունան խօսեց.

Ո՞վ է Աստուած, ո՞վ է Գերագոյն հոգին, ի՞նչ է գործը. Առաջին կենդանի էակ և Սկզբնական Աստուածութիւն ո՞ւմ են կոչում։

Ի՞նչպէս Առաջին զոհ կարող է լինել նա, որ այստեղ մարմնի մէջ է բնակւում։ Վերջին օրն ի՞նչպէս կարող ես գտնուել անձնիշխան մարդոց մտքում։

### Կրիշնան խօսեց.

Աստուած գերագոյն անբաժանելին է. ներքին էութիւնը Գերագոյն Հոգի է կոչւում. գործը էակների նիւթական գոյութիւնը արտադրող ծնունդն է։

Առաջին կենդանի էակը բաժանելի էութիւնն է. Սկզբնական աստուածութիւնը առնական ոյժն է. Առաջին զոհը ես եմ մարմնի մէջ մարմնացեալ։

Ով վերջին օրը ինձ յիշելով և մարմինը թողնելով դուրս է գալիս, նա իմ էութեան մէջ է մտնում. չկայ այստեղ տարակոյս։

Բայց ով մտածում է մի ուրիշ էութեան մասին, երբ թողնում է իր մարմինը՝ նրան է գնում, որովհետև նրա էութեամբ է էացած։

Ուրեմն ամէն ժամանակ ինձ յիշիր և կռուիր. ինձ յառած միտքդ ու բանականութիւնդ՝ դու ինձ կը գաս անտարակոյս։

Մշտապէս Եօգայով ինձ կապուած և ուրիշ տեղ չթափառող մտքով մարդը գնում է դէպի գերագոյն երկնային Ոգին, որի վրայ ընակում էր։

Այս վաղեմի բանաստեղծը, կարգադրիչ աշխարհի, աւելի նուրբ քան հիւլէն, ամենախնամ, ձևով անըմբռնելի, որ խաւարի մէջ արեգակնանման փայլում է։

Մահուան օրը հաստատուն մտքով, սիրով և Եօգայով սրան միացած, յօնքերի մէջտեղ կենդանական շունչը միացրած, Գերագոյն Երկնային Ոգուն է դիմում։

Այն ճանապարհը, որը անբաժանելի են կոչում վէդայագէտները [1]), ուր գնում են անձնիշխան ու կրքից ազատ մարդիկ, որին յանկանում են Բրահմայի նորընծաները, ահա այդ ճանապարհը պիտի ցոյց տամ քեզ համառօտակի։

Զգայարանների բոլոր դռները փակած, միտքը սրտում կենդրոնացած և կենսական շունչը գլխում, հաստատուն և յարատև Եօգայի մէջ:

«Օ՜մ» սրբազան բառը մի և անբաժանելի Բրահմային ուղղելով, իմ վրայ մտածելով, ով մեկնում է թողնելով մարմինը, նա գնում է գերագոյն ճանապարհը:

Ով առանց ուրիշ բանի վրայ մտածելու՝ միշտ ինձ է յիշում անդադար, ես մատչելի եմ նրան. նա յաւիտենապէս միացած Եօգի է։

Ինձ հասնելով՝ նորից այս կործանական չարալից ծնունդը չեն ստանում այդ մեծ հոգիները՝ որոնք գտել են գերագոյն կատարելութիւնը։

Բրահմայի մօտ են դառնում նորից աշխարհները, ո՜վ Արջունա. բայց ով ինձ է հասնում, նա նորից չի ծնւում։

Ովքեր գիտեն՝ թէ Բրահմայի մի օրը հազար դարաշրջան է պարունակում, և մի գիշերը նոյնպէս հազար դարաշրջան, նրքա ճանաչում են օրն ու գիշերը։

Անտեսանելիից են ծագում բոլոր տեսանելիները օրուայ սկզբին, և երբ գիշերը հասնում է, նրքա լուծւում են նոյն անտեսանելու մէջ։

Այսպէս էակների ամբողջութիւնը ծնւում է, նորից ծընւում է. հալւում է, գիշերը հասնելիս ցրւում է, և վերածնւում է առաւօտեան:

Բայց այս տեսանելի էակից դուրս, կայ և ուրիշը՝ անտեսանելի և յաւիտենական. ամբողջ էակները կորչում են, բայց նա չի կորչում:

Նա կոչւում է Անտեսանելի և Անբաժանելի. նա գերագոյն ճանապարհն է. նրան հասնողը էլ յետ չի դառնալ, այնտեղ է իմ գերագոյն բնակարանը:

Այս Առնական ուժին հասնում են միմիայն նրան պաշտելով. նրա մէջ հանգչում են էակները. նրանով է այս ամբողջ Տիեզերքը:

Ո՞ր ժամանակ են գնում Եօգիները վերադառնալի կամ անդառնալի կերպով. ահա այդ ժամանակը պիտի սովորեցնեմ քեզ, ո՜վ Բհարատայի որդին:

---

1) Հնդկաց Ս. Գիրքը՝ վէդան սովորած մարդ։

*Կրակը, լոյսը, օրը, նոր լուսինը, այն վեց ամիսները՝ երբ Արեւը հիւսիսումն է. ահա ժամանակը՝ երբ գնում են Բրահմայի մօտ բրահմայաճանաչ մարդիկ:*

*Ծուխը, գիշերը, վերջին լուսինը, հարաւի վեց ամիսները. ահա երբ գնում է Ոգին լուսնի պարունակի մէջ և յետոյ վերադառնում:*

*Ահա երկու յաւիտենական ճանապարհները, պայծառ կամ խաւար, հաւատալիք այս աշխարհի. մին գնում են անդառնալի, միւսը գնում են վերադառնալի:*

*Այս երկուսին ճանաչելով Ոգին չի մոլորվում. ուստի ամէն ժամանակ Ոգայով միացիր, ո՛վ Արջունա:*

*Վեդայի ընթերցման, զոհի, ճգնութեան և ողորմութեան համար խոստացուած վարձատրութիւնները, այս բոլորը գերազանցում է Ոգին գիտութեամբ և գերագոյն հանգիստն է հասնում:*

Այստեղ վերջանում է Բհագավադգի՛տա՛յի ութերորդ գլուխը, որի անունն է Անքաժանելի եւ Գերագոյն Բրահմայի Ոգա։

---

# Թ.

## Կրիշնան խօսեց.

*Այժմ ես քեզ կը բացատրեմ իր ամբողջութեամբ և իր մասերով այն խորհրդաւոր գիտութիւնը, որը սովորելով դու կազատուես չարիքից:*

*Դա գիտութեան թագաւորն է. դա գաղտնիքների թագաւորն է. դա գերագոյն սրբագործութիւնն է, ներհայեցողութեամբ ըմբռնելի, օրինական, գործադրութիւնը հաճոյական, անսպառ:*

*Նորա օրինականութեանը չհաւատացող մարդիկ, ինձ չեն հասնում և ենթարկւում են մահուան յեղափոխութեանց:*

*Ե՛ս կազմեցի այս ամբողջ տիեզերքը՝ անտեսանելի ձևովս. իմ մէջ են պարունակւում բոլոր էակները. իսկ ես նոցա մէջ չեմ պարունակւում:*

*Բայց նաև էակները իմ մէջ չեն պարունակւում. տե՛ս Ոգայի գաղտնիքը. իմ հոգին էակների տածիչն է, բայց առանց էակների մէջ պարունակուելու՝ էակների էութիւնն է:*

*Ինչպէս օդի մէջ պարունակւում է անդադար ամէն կողմից փչող մի մեծ քամի, այնպէս էլ բոլոր էակները պարունակւում են իմ մէջ. ըմբռնի՛ր այս:*

Բոլոր էակները մտնում են իմ արարչականութեան մէջ Կալպայի [1]) վերջը· Նրանց նորից Կալպայի սկզբին արձակում եմ ես:

Իմ արարչականութեան մէջ անշարժ, արձակում եմ հետզհետէ էակների այս ամբողջութիւնը առանց իրենց կամքին, միայն իմ արարչական ուժով:

Եւ ինձ այս գործերը չեն կաշկանդում· ես դուրս եմ նոցանից և իրենցից կախուած չեմ:

Իմ կարգադրութեամբ արարչականութիւնը ծնում է շարժական և անշարժ իրերը· և այս պայմանով աշխարհը դառնում է:

Արհամարհում են ինձ անզգամները՝ երբ մարդկային մարմին եմ զգենում, իմ գերագոյն էութիւնը չճանաչելով՝ որ բոլոր արարածների հրամայողն է:

Զուր յոյսեր, զուր գործեր, զուր գիտութիւն, խելացնորներ· Ռա՛քշասաների և Ա՛սուրաների [2]) խռովարար ուժի տակ են:

Բայց մեծահոգի իմաստունները իմ աստուածային արարչականութեան հետևում են, պաշտում են միայն իմ մասին մտածելով, և ճանաչելով, ինձ իբր էակների անայլայլ սկզբունքը:

Անդադար օրհնաբանում են ինձ, մաքառելով ու հաստատուն մնալով իրենց ուխտի մէջ, պատւում են ինձ, պաշտելով և յաւիտենական Եօգայով ծառայելով:

Ուրիշներ գիտութեան զոհը զոհաբերելով՝ ինձ ծառայում են՝ միութեանս ու պարզութեանս մէջ՝ երեսս դարձրած ամենուրեք:

Ես պաշտումն եմ, ես զոհն եմ, ես մեռելոց պատարագն եմ, ես փրկութեան բոյսն եմ, ես օրհներգն եմ, ես օծումն եմ, ես կրակն եմ, ես մատաղն եմ:

Հայրն եմ ես այս աշխարհի, մայրը, ամուսինը, պապը: Ես վարդապետութիւնն եմ, սրբագործութիւնը, սրբազան Օ՛մը, Ռիգը, Սա՛ման և Եաջուրը:

Ճանապարհը, պահապանը, տէրը, վկան, օթևանը, ապաւէնը, բարեկամը, ծնունդը, ջնջումը, հանգիստը, գանձը, անմահ սերմը:

Ես եմ տաքացնում, ես եմ անձրևը պահում և տեղում· անմահութիւնն ու մահը, էութիւնն ու անէութիւնն եմ ես, ո՛վ Արջունա:

---

1) Հազարաւոր տարիների մի դարաշրջան·

2) Սատանաների տեսակներ·

Վեդայագէտները Սոման [1]) ըմպելով, մեղքերից քաւուած և զոհը մատուցած՝ ինձ են համարում երկնային ճանապարհը։ Նոքա հասած Ինդրա Աստուծոյ բնակարանը՝ ճաշակում են դրախտում աստուածային սնունդը։

Եւ երբ ճաշակել են այս ընդարձակ երկնային աշխարհից, արժանիքներն սպառած, մահկանացուների աշխարհն են դառնում։ Եւ այսպէս երեք օրինագրքերին հետևող մարդիկ՝ երջանկութեան ցանկանալով՝ ենթարկւում են վերադարձների։

Մարդիկ՝ որ առանց ուրիշ բանի վրայ մտածելու ծառայում են ինձ և մնում են միշտ ինձ միացած, Եօգայի երանութիւնն են ստանում ինձանից։

Եւ նոքա՝ որ ուրիշ աստուածութիւնից պաշտելով զոհում են հաւատքով լցուած, նոքա ինձ էլ զոհում են՝ թէև հին օրէնքից դուրս։

Որովհետև բոլոր զոհերին էլ ես եմ հաւաքում, ես եմ ընդունում․ բայց նոքա ինձ չեն ճանաչում իմ էութեամբս, կրկին ընկնում են նոքա։

Աստուածապաշտները գնում են Աստուածներին, նախնեաց պաշտողները գնում են նախնիքներին․ դիւապաշտները գնում են դևերին․ իսկ ինձ պաշտողները ինձ են գալիս։

Երբ մէկը ինձ մի տերև, մի ծաղիկ, մի պտուղ կամ մի հեղուկ է ընծայում իբր պաշտամունք, ես ընդունում եմ իբր սնունդ և բարեպաշտական ընծայաբերութիւն։

Ինչ անում ես, ինչ ուտում ես, ինչ զոհում ես, ինչ տալիս ես, ինչ կրում ես, ո՛վ Կունտի՛ի որդի, նրանից արա՛ ինձ ընծայաբերութիւն։

Բարի թէ չար պտղով՝ գործերի կապանքից դու կազատուիս, և հոգիդ անձնուրաց կերպով միացած Եօգային, ազատ, կը գաս ինձ մօտ։

Նոյնն եմ ես բոլոր էակների համար․ ոչ ատելութիւն ունիմ, ոչ սէր․ բայց ովքեր պաշտում են ինձ՝ նոքա իմ մէջն են և ես նոցա մէջ։

Նոյն իսկ ամէնից յանցաւորը երբ պաշտում է ինձ՝ առանց ուրիշին մատուցանելու իր պաշտամունքը, նա լաւ պիտի համարուի, որովհետև բարի ճանապարհն է բռնում։

Շուտով նա կը լինի արդար, և յաւիտենական հանգիստը կը գնայ։ Ո՛վ Կունտի՛ի որդի, խոստովանի՛ր թէ ինձ պաշտողը չի կորչիլ։

---

1) Զոհի ժամանակ բաժանուած ըմպելիքը՝ որ պատրաստւում է զանազան ծաղիկներից եւ այլն․

*Որովհետև ինձ ապաստանողները, մինչև իսկ եթէ մեղքի մէջ յղացուած լինին, կանայք, վայսիաներ, նոյն իսկ սո՛ւտրաները, գնում են գերագոյն ճանապարհը:*

*Ո՛ւր մնաց սուրբ բրա՛հմանները և բարեպաշտ արքայական իմաստունները: Այս կործանական ու ցաւալից աշխարհում զետեղուած, պաշտի՛ր ինձ:*

*Ի՛նձ յառիր միտքդ, ի՛նձ պաշտիր, ի՛նձ զոհիր և ի՛նձ պատուիր. և միայն ինձ տեսնելով ու ինձ միանալով, դու ի՛նձ կը հասնես:*

Այստեղ վերջանում է Բհագավադգի՛տա՛յի իններորդ գլուխը, որի անունն է գիտութեան թագաւորի ու գաղտնիքների թագաւորի Եօգա:

## Ժ.

### Կրիշնան խօսեց.

*Լսի՛ր, ո՛վ մեծազօր, լսի՛ր իմ գերագոյն խօսքերս, որ ես քեզ ասելու եմ քո փրկութեան համար:*

*Ոչ աստուածների դասը և ոչ Մեծ Իմաստունները չեն իմանում իմ ծնունդը, որովհետև ես եմ աստուածների և բոլոր Մեծ Իմաստունների սկիզբը:*

*Ով ինձ անծին և անսկիզբ գիտէ, և աշխարհի տէրը, նա անսխալ է մահկանացուների մէջ, և բոլոր մեղքերից քաւուած է:*

*Բանականութիւնը, գիտութիւնը, արագութիւնը, համբերութիւնը, ճշմարտութիւնը, սրտակցութիւնը, խաղաղութիւնը, հաճոյքը, ցաւը, գոյացութիւնը, ջնջումը, երկիւղն ու ապահովութիւնը,*

*Քաղցրութիւնը, հոգու անդորրութիւնը, ուրախութիւնը, ճգնութիւնը, ողորմածութիւնը, փառքը, նախատինքը՝ էակների էութիւններն են, որոնք ինձնից են բաշխւում:*

*Եօթը Մեծ Իմաստունները, չորս Պո՛ւրվաները և Մանուները իմ մէջ էացած և իմ մտքով են ծնուած, և նոցանից աշխարհի մէջ մարդիկ:*

*Ով իմ այս կարողութիւնը և Եօգան գիտէ էապէս, նա անդրդուելի Եօգայով կապւում է անտարակոյս:*

*Ես եմ բոլորի սկիզբը, տիեզերքն ինձնից է ծագել. այսպէս մտածելով պաշտում են ինձ իմաստունները՝ գերագոյն էութեան էակից:*

*Իմ վրայ մտածելով, իմ մասին հառաչելով, սովորեցնելով իրար, պատմելով ինձ անդադար, ուրախանում են և հրճւում:*

Նոցա որ միշտ Եօգայով միացած, ընծայում են ինձ սիրոյ զոհը, տալիս եմ բանականութեան Եօգան, որով Նոքա ինձ են հասնում:

Իմ ողորմածութեամբ և առանց իմ էութիւնից հեռանալու՝ ես Նոցա միջից փարատում եմ ագիտութեան խաւարը գիտութեան լուսաւոր ջահով:

Արջունան խօսեց·

Դու էք գերագոյն Բրահման, գերագոյն բնակարանը, գերագոյն սրբագործութիւնը, երկնային և յաւիտենական Ոգին, Սկզբնական աստուածութիւնը, անծին, տէր:

Քեզ խոստովանում են բոլոր իմաստունները, Երկնային իմաստունն Նարադա, Ասիտան, Դէվալան, Վիասան. այժմ ինձ ես յայտնում քեզ:

Այս բոլորը որ դու ինձ խօսեցիր, ընդունում եմ իբր ճշմարտութիւն. որովհետև ոչ աստուածները և ոչ Դանավաները չգիտեն թէ ինչպէս դու տեսանելի ես դառնում:

Ինքդ միայն գիտես քեզ, ո՜վ մարդկանց վեհագոյնը, էակների էակը, կենդանիների իշխան, աստուածների Աստուած, արարածների տէր:

Հաճի՛ր ինձ պատմել առանց ծածկելու այն երկնային առանձնայատկութիւնները, որոնցով դու պահում ես այս աշխարհները թափանցելով Նոցա մէջ:

Ի՞նչպէս կարող եմ ճանաչել քեզ, ո՜վ Եօգի, մտքով միացած քեզ. քո ո՞ր էութիւններով դու ինձ մատչելի կը լինես:

Պատմի՛ր ինձ երկար քո Եօգան և քո կարողութիւնը, ո՜վ մարդկանց յաղթական, քո խօսքերն իմ ականջիս անյագելի ամբրոսիա են:

Կրիշնան խօսեց·

Արդ Քեզ պատմեմ երկնային առանձնայատկութիւնները համառօտակի. որովհետև չկայ սահման իմ անհունութեան:

Ես բոլոր կենդանի էակների մէջ գտնուող հոգին եմ. ես էակների սկիզբը, միջոցը և վերջն եմ:

Ադիտեաների մէջ ես Վիշնուն եմ, Լուսաւոր մարմինների մէջ լուսապայծառ Արեգակը. Մարուտների մէջ Մարիճին եմ, Համաստեղութեանց մէջ Լուսինը:

Վէդաների մէջ Սաման եմ ես, աստուածների մէջ Վասավան, զգայութեանց մէջ միտքը, էակների բանականութիւնը:

*Ռուդրմների մէջ Շանկարան եմ, Եաքշաների և Ռաքշասաների մէջ հարստութեանց իշխանը, Վասուների մէջ Պաւական եմ, լեռնագագաթների մէջ Մերուն:*

*Ես առաջին քահանայապետն եմ, գիտցի՛ր, ո՛վ Պրիթհայի որդի, ես Վրհասպատին եմ. զօրապետների մէջ Սկանդան, լճերի մէջ Ովկիանն եմ:*

*Մեծ իմաստունների մէջ Բհրգուն եմ ես. բառերի մէջ միակ անբաժանելին Օ՛մ, զոհաբերութեանց մէջ լուռ աղօթքն եմ, լեռնաշղթաների մէջ Հիմա՛լայան:*

*Բոլոր ծառերի մէջ Թզենին, Աստուածային իմաստունների մէջ Նա՛րադան. երկնային երաժիշտների մէջ Ճիտրարաթան, սրբերի մէջ Կապիլա ճգնաւորը:*

*Նժոյգների մէջ Ուճչայշրավան գիտցիր ինձ՝ ծնած ամբրոսիայից, Այրա՛վատան փղերի մէջ, մարդկանց մէջ իշխանաւորը:*

*Զէնքերի մէջ կայծակն եմ, կովերի մէջ կա՛մադհուկն եմ. ես ծնիչ Կանդարպան եմ, օձերի մէջ Վա՛սուկին եմ:*

*Անանտան եմ ես նա՛գաների մէջ, Վարունան եմ ջրային կենդանիների մէջ, նախահայրերի մէջ Արիամանն եմ, դատաւորների մէջ Եաման:*

*Պրահլա՛դան եմ Դայտիաների մէջ, ժամանակն եմ չափերի մէջ, գազանների մէջ վագրը, թռչունների մէջ Վայնատէյան:*

*Մաքրիչ բաների մէջ քամին եմ. Ռաման եմ պատերազմիկների մէջ. ձկների մէջ մակարան եմ. գետերի մէջ Գանգէսը:*

*Արարչութեան մէջ սկիզբն եմ, միջոցը և վերջը, ո՛վ Արջունա. գիտութեանց մէջ Գերագոյն Հոգու գիտութիւնը, խօսողների համար ես խօսքն եմ:*

*Գրերի մէջ Այբն եմ. բաղադրեալ բառերի մէջ բարդութիւնը. ես անսահման ժամանակն եմ. ես Արարիչն եմ ամենատես:*

*Մահն եմ ամենակուլ և կեանք ապագայ էակների. իգական բառերի մէջ փառքը, բախտ, պերճախօսութիւն, յիշողութիւն, իմաստութիւն, հաստատակամութիւն, համբերութիւն:*

*Սամայի երգերի մէջ մեծ օրհներգն եմ. չափաբերութեանց մէջ գա՛յատրին, ամիսների մէջ մա՛րգաշիրսան[1]) եղանակների մէջ գարունը:*

---

1) Դրեթէ համապատասխանում է Հին Հայոց Մարգաց [illegible] ամսին

Խաբեբաների բախտն եմ եմ ես, նշանաւորների շուքը, ես յաղթութիւնն եմ, խորհուրդն եմ, ճշմարտատէրների ճըշմարտութիւնն եմ:

Վրշնիի որդոց մէջ Վասուդէվան եմ. Պանդավաների մէջ Ինքդ եմ. մենակեացների մէջ Վյասան եմ, բանաստեղծների մէջ Ուշանան:

Ճգնաւորների ճգնութիւնն եմ ես, կարգապահութիւնն յաղթականների, լռութիւնը գաղտնիքների մէջ, գիտութիւնը իմաստունների մէջ:

Ի՛նչ բեղմնաւորութիւն կայ բոլոր էակների մէջ, այդ Ե՛ս եմ, Ա՛րջունա. որովհետև առանց ինձ գոյութիւն չէ կարող ունենալ ո՛չ մի բան, շարժական թէ անշարժ:

Վերջ չունին իմ երկնային զօրութիւնները, ո՛վ Արջունա, և ես քեզ պարզեցի մի ամենատկար մասն իմ կատարելութեանց:

Ինչ որ կայ ընտիր, երջանիկ նաև զօրաւոր, դա ծագել է իմ կարողութեան մի նշոյլից:

Բայց ինչո՞ւ քեզ այս բովանդակ գիտութեամբ ծանրաբեռնել, ո՛վ Արջունա. երբ ես հանգչեցրի ամէն ինչ իմ անձիս մի մասնիկի վերայ, աշխարհը կազմուեց:

Այստեղ վերջանում է Բհագավադ-գի՛տա՛յի տասներորդ գլուխը, որի անունն է Գերագոյնի Եօգան:

---

## ԺԱ.

### Արջունան խօսեց.

Գերագոյն Հոգու գիտութեան վեհագոյն գաղտնիքը, որ դու ինձ բացատրեցիր իմ փրկութեան համար, փարատեց ինձանից իմ մոլորութիւնները:

Որովհետև ընդարձակօրէն լսեցի ես էակների ծնունդն ու վախճանը ո՛վ lotus ծաղկի աչքերով Աստուած, և քո անկորնչելի մեծանձնութիւնը:

Բայց ես ցանկանում եմ տեսնել, ո՛վ վեհագոյն տէր, քո անձնաւորութիւնը, այն ձևով որով նկարեցիր դու, ո՛վ մարդկանց գերագոյնը:

Եթէ դու մտածում ես թէ այս տեսիլքը ինձ մատչելի է, ո՛վ Եօգայի տէր, այն ժամանակ ինձ ցոյց տուր քեզ, քո յաւիտենական հոգին:

Կրիշնան խօսեց.

*Տե՛ս, ո՜վ Պրիթհա՛յի որդի, տես իմ ձևերը՝ հարիւրապատիկ ու հազարապատիկ զանազանեալ, երկնային, բազմագոյն ու բազմաձևի:*

*Տես Ա՛դիտյաները, Վասուները, Ռուդրաները, երկու Աշվինները, Մարուտները․ բազմաթիւ անծանօթ այս հրաշալիքները տես:*

*Ահա իր միութեան մէջ տես այս տիեզերքը շարժական և անշարժ առարկաներով բովանդակուած իմ մարմնի մէջ և ամէն ինչ որ դու տեսնել ես ցանկանում:*

*Բայց որովհետև դու ինձ չես կարող տեսնել քո մարմնաւոր աչքերով, երկնային աչք կը տամ քեզ, և նայիր իմ մէջ գերագոյն Եօգային:*

Սանջայան խօսեց.

*Այսպէս խօսելով մեծ Եօգայի տէր Հարին, ցոյց տուաւ Պրիթհա՛յի որդուն իր փառահեղ վեհագոյն դէմքը:*

*Լի բազմաթիւ աչքերով ու երեսներով, բազմաթիւ սքանչելի երևոյթներով, բազմաթիւ աստուածային զարդարանքներով, երկնային բազմաթիւ զէնքեր բռնած:*

*Աստուածային դրասանգներով ու զգեստներով, երկնային բոյրերով անուշաբուրուած, ամէն բանով հրաշալի, շողշողուն, անհուն, երեսն ամենուրեք:*

*Եթէ երկնքում յանկարծ ցոլանար հազար արեգակների բոցափայլութիւնը, կարելի կը լինէր համեմատել այս մեծանձն Աստուծոյ բոցափայլութեան հետ:*

*Այնտեղ Պա՛նդուի որդին տեսաւ տիեզերքն ամբողջ և միակ ու բազմապատիկ Աստուածների Աստուծոյ մարմնում:*

*Եւ այն ժամանակ սարսափահար, մազերը կանգնած, հսկա՛ն ծռեց իր գլուխը և ձեռքերը միացնելով՝ խօսեց Աստուծուն:*

Արջունան խօսեց.

*Տեսնում եմ բոլոր աստուածներին քո մարմնի մէջ, ո՛վ Աստուած, ու կենդանի էակների խմբերը, ու Բրահմա Աստուծուն՝ նստած* lotus *ծաղկի վերայ, ու բոլոր Իմաստուններին ու բոլոր երկնային վիշապներին:*

*Քո բազմաթիւ բազուկներով, կրծքերով, երեսներով ու աչքերով տեսնում եմ քեզ բոլորովին անհուն երևոյթներով, ոչ վերջ, ոչ միջոց և ոչ սկիզբն եմ տեսնում, ո՛վ տիեզերական տէր, ո՛վ տիեզերական երևոյթ:*

Դու կրում ես խոյրը, լախտը, մկունդը, ո՛վ լուսոյ լեռ՝ ամբողջովին շողշողուն. հազիւ կարողանում եմ քեզ տեսնել ամբողջապէս, որովհետեւ դու փայլում ես կրակի ու արեգական պէս քո անհունութեան մէջ:

Դու Անբաժանելին, գերագոյն Ըմբռնելին ես. դու այս տիեզերքի գերագոյն գանձարանն ես. դու անկորնչելին, Օրէնքն անխախտ պահողն ես. դու յաւիտենական Առնական ուժն ես:

Անսկիզբը, անմիջոց և անվերջ, անփախճան զօրութեամբ, անսահման բազուկներով, հայեացքդ նման Լուսնի ու Արեգական, ես տեսնում եմ քեզ. քո բերանը նուիրական Կրակի փայլն ունի, քո ջերմութեամբ տաքանում է այս տիեզերքը:

Երկնքի և երկրի միջոցը ու բոլոր սահմանները հասնում ես դու մէն մենակ. տեսնելով քո այս գերբնական ու զարհուրելի երևոյթը երեք աշխարհները դողդողում են, ո՛վ մեծանձն Աստուած:

Ահա աստուածային էակների խումբը քեզ է դիմում. ոմանք երկիւղից ձեռները միացրած աղօթում են լուռ. «Սուաստի՛» գոչում են Մեծ իմաստուններն ու սրբերի խմբերը և օրհնաբանում են քեզ վեհ օրհներգներով:

Ռուդրաները, Ադիտիաները, Վասուները, Սա՛դհիաները, Վիշվաները, երկու Աշվինները, Մարուտաները, Ուշմապաները, Գանդհարվաների, Եակշաների, Ասուրաների ու Սիդդհաների խմբերը նայում են քեզ, և սարսափում են բոլորը:

Այդ մեծ երևոյթը՝ բազմաթիւ բերաններով ու աչքերով, բազմաթիւ բազուկներով, սրունքներով ու ոտներով, բազմաթիւ կրծքերով, բազմաթիւ ահարկու ատամներով՝ տեսնում են աշխարհներն ու զարհուրում, ու ես ևս:

Երբ Քեզ տեսնում եմ ամպածրար, բազմաթիւ գոյներով երփներանգ, բերանաբաց ու կայծակնացայտ աչքերով, ցնցւում է հոգիս ու չեմ գտնում իմ հանգիստն ու դադարը, ո՛վ Վիշնու:

Երբ տեսնում եմ քո կերպարանքը սպառնալից ատամներով ու նման աշխարհաւերող հրդեհին, էլ բոլորովին չեմ տեսնում ու իմ ուրախութիւնը հեռանում է. օգնի՛ր ինձ, ո՛վ Աստուածների տէրը, ո՛վ Աշխարհների բնակարանը:

Բոլոր այս Դհրտարա՛շտրայի որդիները իշխանների բանակներով, Բհիշման, Դհրոնան ու այս կառապանի որդին մեր զինուորների զօրապետների հետ,

Գնում են դահավիժուել քո զարհուրելի, քո սպառնալից ատամներով զինուած բերնի մէջ. ոմանք ջարդուած

գլուխներով առկախ մնում են ատամներից մէջտեղ:

Ինչպէս ջրերի բազմաթիւ հեղեղները Ովկիանն են դիմում ուղղակի, այնպէս այս հսկաները տարւում են դէպի քո կայծակնացայտ կերպարանքը:

Ինչպէս դէպի հրավառ բոցն է թռչում թիթեռը յարաճուն արագութեամբ՝ մահանալու համար, այնպէս արագ վազում են էակները քո բերանում կորչելու համար:

Ուտում է քո լեզուն ամբողջ աշխարհները և քո բոցավառ կոկորդը կլանում է նրանց. քո լոյսով լցնում ես ամբողջ տիեզերքը և քո ճառագայթները տաքացնում են նրան, ո՛վ Վիշնու:

Պատմի՛ր ինձ, ո՛վ ես դու, ո՛վ ահեղ երևոյթ. օրհնութիւն քեզ, ո՛վ գերագոյն Աստուած. օգնի՛ր ինձ, ես ցանկանում եմ իմանալ քո սկզբնական էութիւնը, որովհետև ես չեմ նախատեսում քո ընթացքը:

Կրիշնան խօսեց.

Ես ժամանակն եմ աշխարհակործան. ծերացած եկել եմ ես աշխարհները ջնջելու. բացի քեզանից չպիտի մնայ ոչ ոք այս երկու բանակների զինուորներից:

Ուստի վե՛ր կաց, փառք որոնիր. յաղթահարի՛ր թշնամիներիդ և ձեռք բեր ընդարձակ տէրութիւնը. ես վճռել եմ նրանց կորուստը. դու եղիր միայն իմ գործիքը:

Դրոնային, Բհիշմային, Ջայադրաթային, Կարնային և ուրիշ պատերազմիկներին ես զրկել եմ կեանքից. սպանի՛ր նրանց, մի՛ խռովիր. կռուի՛ր և դու պիտի յաղթես քո ոսոխներին:

Սանջայան խօսեց.

Երբ լսեց գանգրահեր Աստուծու այս խօսքերը, ձեռքերը միացրած, թագակիր մարտիկը երկրպագեց երկիւղածութեամբ Կրիշնային և այսպէս ասաց նրան դողդոջուն, զարհուրած ու փափայով:

Արջունան խօսեց.

Այո՛, ո՛վ գանգրահեր Աստուած, քո անունով աշխարհն հրճւում է և հպատակւում. Ռաքջաները սարսափահար փախչում են. բոլոր Սիդդհաների խմբերը երկրպագում են:

Եւ ինչո՞ւ չպաշտէին քեզ, ո՛վ մեծանձն, քե՛զ՝ աւելի յարգելի քան Բրահմանը, առաջին արարիչ, անվախճան, Աստուածների տէր, Աշխարհի բնակարանը, քե՛զ անբաժանելի աղբիւր էութեան և անէութեան:

Դու առաջին աստուածութիւնն ես, առաջին առնա-

կան ոյժը, դու այս տիեզերքի գերագոյն գանձարանը. դու գլխաւորն ես, դու գիտութեան առարկան ես, գերագոյն բնակարանն ես. քեզնից է այս Տիեզերքը, ով անհունակերպ Աստուած:

Դու ես Վայուն, Եաման, Նուիրական հուրը, Վարունան, Լուսինը. դու Արարչապետ և Նախահայր. փառք, փառք քեզ հազարապատիկ, և դարձեալ կրկին փառք, փառք քեզ:

Փառք քո ներկայութեան և քո յետևից, փառք քեզ ամենայն տեղ, ով Տիեզերական. անհուն զօրութեամբ և անսահման կարողութեամբ դու տիեզերքն ընդգրկում ես. դու տիեզերական ես:

Եթէ քեզ կանչել եմ այսպէս ասելով. «Էյ, Կրիշնա, Էյ Եադուի որդի, Էյ բարեկամ». եթէ չեմ ճանաչել քո վեհափառութիւնը յանդգնութեամբ կամ նախանձով,

Եթէ բարկացրել եմ քեզ խաղալիս, պառկած, նստած կամ ուտելիս, մենակ կամ այս պատերազմիկների առաջ, ներիր ինձ, ով անսահման Աստուած:

Դու Հայրն ես աշխարհի, շարժական և անշարժ առարկաների, դու աւելի պատուական ես քան հոգևոր ուսուցիչը. ոչ ոք չկայ քեզ հաւասար. ով կարող է գերազանցել քեզ երեք աշխարհներում, ով անսահման Վեհափառութիւն:

Ուստի խոնարհելով ու երկրպագելով քո առաջ, ես քո շնորհն եմ աղերսում, ինչպէս հայրը որդուն, ինչպէս բարեկամը բարեկամին, սիրահարը սիրուհուն, այնպէս օգնիր ինձ, ով Աստուած, ով Օրհնեալդ:

Անտեսանելուց տեսնելով՝ ես հրճուել եմ, բայց երկիւղով սարսափում է միտքս, ցոյց տուր ինձ, ով Աստուած, քո առաջին երևոյթը. օգնիր ինձ, ով Աստուածների տէրը, ով աշխարհի բնակարանը:

Խոյրով, լախտով ու մկունդով ուզում եմ տեսնել քեզ նորից. վերստացիր քո չորեքթևեան կերպարանքը, ով բազմարազուկ ու բազմաձև Աստուած:

Կրիշնան խօսեց.

Իմ շնորհիւն է, ով Արջունա և Եօգայի զօրութեամբ, որ դու տեսար իմ գերագոյն կերպարանքը, շողշողուն, տիեզերական, անսահման ու սկզբնական, որ ոչ ոք քեզանից առաջ չէր տեսել:

Ոչ Վէդան, ոչ Զոհը, ոչ Ընթերցումը, ոչ ողորմութիւնը, ոչ արարողութիւնները, ոչ խիստ ճգնութիւնները, չէին կա-

*րող ինձ տեսանելի ընծայել աշխարհում ոչ մէկին բացի քեզանից, ո՛վ Կուրուի որդի:*

*Մի՛ վախենար, մի՛ յուզուիր տեսնելով իմ այս սոսկալի կերպարանքը, աներկիւղ ու զուարթ՝ դու նորից իմ առաջին կերպարանքը պիտի տեսնես:*

Սանջայան խօսեց.

*Այսպէս խօսելով Վասուդէվան ցոյց տուաւ Արջունային իւր միւս կերպարանքը, և հանգստացրեց նորա երկիւղը՝ նորից երևալով իր սովորական կերպարանքով:*

Արջունան խօսեց.

*Տեսնելով այժմ քո մարդկային անխռով կերպարանքը, նորից ինձ գտնում եմ և մտնում բնական ընթացքի մէջ:*

Կրիշնան խօսեց.

*Իմ այս դժուար տեսանելի կերպարանքը, որ տեսար դու, աստուածներն անգամ անդադար ցանկանում են տեսնել:*

*Բայց ոչ վեդաներով, ոչ ճգնութեամբ, ոչ ողորմածութեամբ և ոչ զոհերով տեսանելի չեմ դառնում ես այնպէս՝ ինչպէս տեսար դու:*

*Անվերջ պաշտամունքով միայն, ո՛վ Արջունա, կարելի է ճանաչել ինձ այս ձևով, տեսնել իմ էութեամբ, թափանցել իմ մէջ:*

*Ով գործում է ինձ համար, իմ գերագոյնն է ճանաչում, ինձ է պաշտում միայն, ով չունի ցանկութիւն կամ ատելութիւն դէպի կենդանի էակները, նա գալիս է ինձ մօտ:*

Այստեղ վերջանում է Բհագավադգի՛դա՛յի տասնմէկերորդ գլուխը, որի անունն է Տիեզերական կերպարանքի տեսիլքը:

---

## ԺԲ.

Արջունան խօսեց.

*Նոքա որ Եօգայով միացած միշտ ծառայում են քեզ, և նոքա որ Անքաժանելուն և Անտեսանելուն են հետևում, ովքե՞ր աւելի լաւ են ճանաչում Եօգան:*

Կրիշնան խօսեց.

*Նոքա որ ինձ նուիրելով իրենց միտքը, անդադար ծա-*

ռայում են ինձ լի ջերմեռանդ հաւատքով, նոքա ինձ համար գերագոյն Եօգիներն են։

Բայց նոքա որ ծառայում են անբաժանելի, անտեսանելի, անզգալի, ամենուրեք, անիմանալի, գերագոյն, անշարժելի, անփոփոխելի Էակին,

Ու նուաճելով իրենց զգայարաններն ու հաւասարակշիռ պահելով իրենց միտքը՝ հրճւում են համայն էակների բարօրութեամբ, նոքա էլ հասնում են ինձ։

Ծանր կը լինի իրենց պատիժը, եթէ իրենց միտքը հետապնդի Անտեսանելուն. որովհետև Անտեսանելու ընթացքը դժուար է մարմնաւոր իրերով ըմբռնել։

Նոքա որ բոլոր գործերից ինձ համար հրաժարուած են ու անդադրում Եօգայով միմիայն ինձ են նայում ու ծառայում,

Նրանց ես փրկում եմ շուտով մահուան հետևանքների այս ծովից, որովհետև նոքա ինձ են հետևում մտքով։

Ի՛նձ յանձնիր ուրեմն քո միտքը, իմ մէջ հանգստացրու քո բանականութիւնը, և դու շուտով կը բնակուես իմ մէջ անտարակոյս։

Եթէ դու քո միտքը ինձ յանձնել չես կարող հաստատուն կերպով, այն ժամանակ յարատևութեան Եօգայով աշխատիր ինձ հասնել։

Եթէ յարատևութեան ևս ընդունակ չես, գործի՛ր միշտ իմ կամքով, և գործելով միայն ինձ հաճելի գործեր, դու կը հասնես կատարելութեան։

Իսկ թէ այս էլ անկարող ես կատարել, դարձիր Եօգային. և բոլոր գործերից հրաժարելով՝ ընկճի՛ր քեզ։

Որովհետև յարատևութիւնից աւելի լաւ է գիտութիւնը. գիտութիւնից աւելի բարձր է հայեցողութիւնը. հայեցողութիւնից աւելի բարձր է գործերից հրաժարումը. և հրաժարումի մօտ է երջանկութիւնը։

Ով մի էակի համար ատելութիւն չունեցող, բարի և ողորմած, առանց եսասիրութեան, առանց պատուախնդրութեան, հաճոյքի և նեղութեան առաջ անտարբեր, համբերատար,

Ուրախ, միշտ Եօգայով միացած, անձնիշխան, հաստատակամ, միտքն ու բանականութիւնը ինձ յարած և ինձ ծառայող անձը իմ սիրելին է։

Նա, որ չի խռովում աշխարհը և նա, որին աշխարհը չի խռովում, նա որ ուրախութիւնից, բարկութիւնից, երկիւղից և սարսափից ազատ է, նա էլ իմ սիրելին է։

Առանց յետին մտքի, մաքուր, ճարտար, անտարբեր, անխռով, բոլոր ձեռնարկած գործերից հեռու և ինձ ծառայող մարդը նոյնպէս իմ սիրելին է։

Ով չի հրճւում, չի ատում, չի տխրում, չի ցաւում, յաջողութեան ու անյաջողութեան մէջ անտարբեր է ինձ ծառայելու համար, նա իմ սիրելին է:

Անտարբեր դէպի թշնամին ու բարեկամը, դէպի պատիւն ու անպատւութիւնը, դէպի ցուրտը, տաքը, հաճոյքն ու ցաւը, ազատ ցանկութիւնից,

Անտարբեր դէպի նախատանքն ու գովասանքը, լռակեաց, միշտ գոհունակ, անտուն, հաստատամիտ, ինձ ծառայող մարդը իմ սիրելին է:

Բայց նոքա որ անմահութեան խնճոյքին, ինչպէս ասացի, մասնակցում են ջերմեռանդ հաւատքով և իմ մասին միայն մտածելով. ահա իմ ամենասիրելի ծառաներս:

Այստեղ վերջանում է Բհագավադգի՛տա՛յի տասներկուերորդ գլուխը՝ որի անունն է Պաշտամունքի Եօգա:

---

## ԺԳ.

Կրիշնան խօսեց.

Այս մարմինը կոչւում է նիւթ, և ով այդ գիտէ՝ նրան գիտունները կոչում են նիւթի գաղափար:

Նիւթի գաղափարը ես եմ ամէն նիւթի մէջ էլ. նիւթի և նիւթի գաղափարի գիտութիւնը իսկական գիտութիւնն է իմ համար:

Թէ ինչ է նիւթը, իր յատկութիւնները, իր ձևափոխութիւնները, իր ծագումը, թէ ինչ է միտքը և իր կարողութիւնները—դրանք սովորիր ինձանից համառօտակի:

Իմաստունները շատ անգամ զանազան երգերի մէջ երգել են այս նիւթերն առանձին առանձին, նոյնպէս Բրա՛հմանական Սո՛ւտրաների մէջ, որոնք խօսում են ու դատում պատճառների մասին:

Էակների մեծ սկզբունքները, եսը, բանականութիւնն ու վերացականը. տասնևմէկ զգայարանները և հինգ զգայութիւնները,

Ցանկութիւնը, ատելութիւնը, հաճոյքը, ցաւը, երևակայութիւնը, հասկացողութիւնը, խորհրդածութիւնը,—ահա նիւթը համառօտակի իր ձևափոխութիւններով միասին:

Համեստութիւնը, անկեղծութիւնը, հեզութիւնը, համբերութիւնը, շիտակութիւնը, ուսուցչի յարգանքը, մաքրութիւնը, հաստատակամութիւնը, անձնիշխանութիւնը,

Զգայութեան մէջ անտարբերութիւնը, անեսասիրութիւնը, ինչպէս և ծնունդը, մահը, ծերութիւնը, հիւանդութիւնը, ցաւն ու մեղքը նկատի ունենալը,

Անձնազոհութիւնը, չյարուել զաւակի, կնոջ, տան և այլ իրերի, մշտնջենաւոր հոգեկան անտարբերութիւն ցանկալի և անցանկալի բաներում:

Ինձ հետ միշտ Եօգայով միացած հաստատուն ու ջերմեռանդ պաշտամունքը, մենաւոր մի վայրում առանձնութիւնը, աշխարհային հաճոյքներից քաշուելը,

Գերագոյն հոգու յաւիտենական ճանաչողութիւնը, ճշմարտութեան ճանաչողութեամբ ձեռք բերուած հայեացքը, ահա ինչն է կոչւում գիտութիւն. սրա հակառակը տգիտութիւնն է:

Ինչ որ պէտք է գիտենալ ես կը պատմեմ քեզ, որը ստանալով անմահութիւն է ճաշակում մարդ: Անսկիզբն ու գերագոյն Բրահման ոչ էութիւն է, ոչ անէութիւն:

Ամենուրեք ձեռք ու ոտք, ամենուրեք աչք, գլուխ ու դէմք, ամենուրեք լսողութիւն, նա մնում է աշխարհում՝ ամեն ինչ ընդգրկելով:

Բոլոր զգայական կարողութիւնները լուսաւորում է նա՝ առանց ոչ մի զգայարան ունենալու. ամէնքից անջատ, ամէնքի նեցուկն է նա. առանց եղանակի՝ թափանցում է բոլոր եղանակները:

Էակներից ներս է ու դուրս է, շարժուն է ու անշարժ, իր անօրութեան պատճառով աննկատելի է թէ՛ հեռուից և թէ մօտից:

Առանց բաժանուելու էակների մէջ՝ բաշխուած է նա նոցա մէջ. էակների տածիչ՝ նրանց նա իր մէջ է ծծում ու արձակում:

Լուսաւորների լոյսն է խաւարից այն կողմ: Գիտութիւն, գիտութեան առարկայ, գիտութեան նպատակ, ամէնքի սրտում է նա:

Ահա այս է Նիւթը, Գիտութիւնը և գիտութեան առարկան համառօտակի բացատրած: Իմ ծառան սովորելով սրանք՝ իմ էութեանն է հասնում:

Գիտցիր թէ Բնութիւնն ու Առնական զօրութիւնը՝ անսկիզբն են երկուսն էլ. փոփոխութիւններն ու եղանակաւորումները բնութիւնից են ծագում:

Մարմնաւոր գործողութեան մէջ գործիչ պատճառը բնութիւնն է. Առնական զօրութիւնը հաճոյքն ու ցաւն զգացող պատճառն է։

Որովհետև Առնական զօրութիւնը Բնութեան մէջ մնալով զգում է բնութիւնից ծնած եղանակաւորումները, ուստի ձգտելով այս եղանակաւորումներին՝ մի բարի կամ չար արգանդում ծնւում է։

Հանդիսատես ու ազդարար, ածիչ, զգացող, մեծագոյ տէր, գերագոյն հոգի բնակուած մեր մարմնում. ահա գերագոյն Առնական զօրութիւնը։

Ով ճանաչում է Առնական զօրութիւնը, բնութիւնն ու իր եղանակաւորումները, ինչ պայմանի մէջ էլ լինի, նա այլ ևս չի վերածնիլ։

Ոմանք տեսնում են Հոգին իրանց անձում ու իրանց անձի համեմատ. ուրիշներ բանապաշտ ինքնահայեցողութեան Եօգայով, ուրիշներ Գործի Եօգայով։

Իսկ ուրիշներ անգէտ լինելով՝ սովորում են ուրիշներից ու գործադրում. սոքա բոլորը Աստուածային գիտութեան անձնատուր՝ ազատւում են մահուանից։

Երբ ծնւում է մէկը՝ շարժուն կամ անշարժ, գիտցիր թէ նա Նիւթի և Նիւթի գաղափարի միացումից է առաջանում։

Ով հաւասարապէս բոլոր էակների մէջ տարածուած է ընդունում այս գերագոյն սկզբունքը, և նոցա կորստի ժամանակ անկորուստ, նա ճիշտ է տեսնում։

Միշտ նոյն և ամէն տեղ ներկայ համարելով այս սկզբունքը, նա չի մեղանչում ինքն իրան և մտնում է գերագոյն ճանապարհը։

Ով մտածում է թէ բնութիւնը գործողութեանց գործիչ պատճառն է միշտ, և իր անձը անգործ է, նա ճիշտ է մտածում։

Ով էակների անհատական էութիւնը միութեան մէջ է ընդունում և նրանից է համարում նրա զարգացումը, նա դէպի Բրահման է գնում։

Անսկիզբը ու առանց եղանակաւորութեանց, այս անայլայլելի գերագոյն Հոգին, թէև մարմնի մէջ, բայց չի գործում, չի ապականւում։

Ինչպէս ամենուրեք տարածուած օդը իր անօսրութեան պատճառով չի ապականւում, նոյնպէս ամենուրեք մարմնի մէջ բնակուած հոգին չի ապականւում։

Ինչպէս Արեգակը մեն-մենակ լուսաւորում է ամբողջ այս աշխարհը, այնպէս էլ Գաղափարը լուսաւորում է Նիւթը։

Ովքե՛ր Նիւթի ու Նիւթի գաղափարի տարբերութիւնը, և

բնութեան կապանքից էակների ազատումը տեսնում են գիտութեան աչքերով, նրքա գնում են Գերագոյնին։

Այստեղ վերջանում է Բհագավադգիտա՛յի տասներեքերորդ գլուխը՝ որի անունն է Նիւթի եւ Նիւթի գաղափարի տարբերութեան Եօգա։

---

## ԺԴ.

Կրիշնան խօսեց.

Գերագոյն գիտութիւնն եմ պատմում քեզ, գիտութիւնների ծայրագոյն գիտութիւնը, որը ճանաչելով բոլոր մենակեացները՝ գերագոյն երջանկութեան գնացին:

Այս գիտութեան մէջ թափանցելով ու իմ գոյութեան խելամուտ լինելով՝ Ստեղծագործութեան օրը նրանք չեն վերածնում և մարմինների քայքայումը նրանց չի վնասում:

Իմ արգանդը մեծ Բրահման է. այստեղ սերմը դնում եմ ես. և դա բոլոր էակների էութիւնն է դառնում:

Բոլոր արգանդների մէջ ծնունդ առած մարմիններից, Բրահման է մեծագոյն արգանդը և ես բեղմնաւորիչ հայրը:

Ճշմարտութիւն, բնազդ ու խաւար. ահա բնութիւնից ծնած եղանակաւորումները, որ մարմնին են կապում անայլայլ հոգին:

Այնտեղ ճշմարտութիւնը իր անապականութեամբ փայլուն ու առողջ կապում է նրան երջանկութեան ու գիտութեան ձգտումով:

Բնազդը՝ ազդակից կրքին ու ծնած ախորժակից, կապում է հոգին գործի ձգտումով:

Իսկ խաւարը՝ ծնած տգիտութիւնից ու խաբիչ բոլոր հոգիների, կապում է նրան ապշութեամբ, ծուլութեամբ և թմրութեամբ:

Ճշմարտութիւնը բաղդութեամբ է գրաւում, բնազդը գործով, իսկ խաւարը ծածկելով գիտութիւնը՝ գրաւում է ապշութեամբ:

Ճշմարտութիւնը ծնում է բնազդի ու խաւարի պարտութեամբ. բնազդը խաւարի ու ճշմարտութեան պարտութեամբ. իսկ խաւարը ճշմարտութեան և բնազդի պարտութեամբ:

Երբ բոլոր դռներից մեր մարմնի մէջ թափանցում է գիտութեան լոյսը, այն ժամանակ ճշմարտութիւնը հասունանում է:

Գործերի ձեռնարկութեան և առաջ տանելու եռանդը, անհանգստութիւնը, տենչանքը ծնւում են հասունացած բնազդից։

Կուրութիւնն ու անփութութիւնը, ապշութիւնն ու մոլորութիւնը ծնւում են հասունացած խաւարից։

Երբ ճշմարտութեան հասուն ժամանակ քայքայումն հասնում է մահկանացուի մարմնին, այն ժամանակ ճշմարտատեսների անարատ աշխարհն է գնում նա։

Երբ բնազդի ժամանակ է քայքայւում, վերածնւում է գործունեաների մէջ, իսկ երբ խաւարի մէջ է քայքայւում, վերածնւում է, մի ապուշի արգանդում։

Բարի գործի պտուղը կոչւում է ճշմարիտ ու անարատ. բնազդի պտուղը դժբախտութիւնն է. խաւարի պտուղը տգիտութիւնն է։

Ճշմարտութիւնից ծագում է գիտութիւնը, բնազդից եռանդը, խաւարից ապշութիւն, մոլորութիւն ու տգիտութիւն։

Վերլինք են գնում ճշմարտադէտները. միջավայրում մնում են բնազդականները. իսկ ստորաքարշ խաւարամիտները դժոխքն են գնում։

Ով իմանում է թէ այս երեք Յատկութիւններից դուրս ուրիշ ազդակ չկայ, և թէ ո՛րն է այս Յատկութեանց գերագոյնը, նա իմ էութեանն է դիմում։

Ով անցել է մարմնի մէջ ու մարմնից առաջացած այս երեք Յատկութիւնները, նա ծնունդից, մահից, ծերութիւնից ու ցաւից ազատւում է և անմահութիւնը ճաշակում։

Արջունան խօսեց.

Ի՞նչ նշան ունի նա որ այս երեք Յատկութիւններն անցել է, ի՞նչպէս է վարւում, և ի՞նչպէս է անցնում այս երեք յատկութիւնները։

Կրիշնան խօսեց.

Ով ստուգութիւնը, գործունէութիւնը և մոլորութիւնը չի ատում նոցա ներկայութեան ժամանակ, և նրանց բացակայութեան ժամանակ նրանց չի ցանկանում,

Եւ իբր օտար հանդիսատես է լինում Յատկութեանց զարգացման և չի յուզւում, ու «Յատկութիւններն ընթանում են» ասում ու հեռանում է հանդարտութեամբ,

Անտարբեր դէպի հաճոյքն ու ցաւը, անձնիշխան, որ նոյն է համարում հողի կոյտը, քարն ու ոսկին, հաւասարակշիռ

ուրախութեան ու տխրութեան, գովասանքի ու անարգանքի,

Պատուի ու նախատինքի, բարեկամի ու թշնամու մէջ, որ իր բոլոր գործերից հրաժարուած է, նա անցել է Յատկութիւնները:

Ով որ ինձ անփոփոխելի պաշտամունքի Եօգայով ծառայում է, նա այս երեք Յատկութիւններն անցնելով Բրահմայի էութեան հաղորդակցում է:

Որովհետև բնակարանն եմ ես Բրահմայի, ու անայլայլ անմահութեան, ու յաւիտենական արդարութեան, ու անվախճան երջանկութեան:

Այստեղ վերջանում է Բհագավադգի՛տա՛յի տասնչորսերորդ գիրքը, որի անունն է Երեք Յատկութեանց տարբերութեան Եօգա։

---

## ԺԵ.

Կրիշնան խօսեց.

Արմատները բարձր, ճիւղերը ցածր մի Թզենի կայ յաւիտենական. բանաստեղծութիւններ են նրա տերևները. ով նրան ճանաչում է՝ նա վեդայագէտ է:

Դէպի ցած ու դէպի բարձր տարածւում են իր ճիւղերը, որոնց ոստերը Յատկութիւններն են, ու ծիլերը Զգայութիւնները. դէպի ցած երկարած արմատներ էլ ունի, որոնք գործերով կապկապում են մարդկանց աշխարհում։

Ոչ նրա ձևն են ըմբռնում այս աշխարհում, ոչ վերջը, ոչ սկիզբը և ոչ տեղը: Երբ մէկը այս հաստարմատ թզենին անտարբերութեան ամուր սրով կտրէ,

Թող այն ժամանակ փնտռէ այն անդառնալի վայրը՝ ուր գնացողը էլ չի դառնում: Դէպի այդ սկզբնական Առնական զօրութիւնը Ես եմ առաջնորդում, որից առաջացել է աշխարհի վաղեմի ըղխումը:

Նուաճելով հպարտութիւնը, մոլորութիւնը, միտքը յառած Գերագոյն Հոգուն, հեռացրած ցանկութիւնները, ընկճած հաճոյքի և ցաւի կռիւը, գնում է անմոլոր դէպի յաւիտենական ճանապարհը:

Արևը չէ, Լուսինը չէ, Կրակը չէ որ լուսաւորում է այն վայրը, ուր գնացողը էլ չի դառնում. այնտեղ իմ գերագոյն բնակարանն է:

Իմ մի մասնիկը՝ կենսատու և յաւիտենական՝ կեանքի այս աշխարհում իրեն է քաշում միտքը և բնութեան մէջ գտնուած վեց զգայարանները:

Երբ մարմին է զգենում կամ նրան թողնում այս Գե-րագոյն տէրը, իր հետն է վերցնում նրանց իր ընթացքի ժա-մանակ, ինչպէս քամին որ լցւում է բոյրերով:

Լսելիքը, աչքը, շօշափելիքը, ճաշակելիքը, հոտոտելիքը և միտքը գրաւելով, նա զգայութեանց հետ հաղորդակցւում է:

Հեռանալիս, ներկայ լինելիս ու գործելիս էլ պղտոր մտքերը չեն տեսնում նրան այս Յատկութեանց մէջ. տեսնում են միայն նրանք, ովքեր ունին գիտութեան աչքեր:

Ովքեր կատարում են Եօգան, նրան տեսնում են իրենց անձի մէջ ներկայ. բայց ովքեր կատարում են ու դեռ չեն կատարելագործուած, ընդունակ չեն նրանց տեսնելու:

Այն լոյսը որ ցոլանում է արեգակից բովանդակ աշխար-հի վրայ, այն որ փայլում է Լուսնի ու Կրակի մէջ, գիտցիր թէ դա իմ լոյսն է:

Երկրի մէջ թափանցելով՝ էակներին ես պահում եմ իմ ուժով, սնուցանում եմ խոտերը բոլոր ու դառնում քաղց-րահամ սոմա:

Ես ջերմութիւն դառնալով շնչող մարմինների մէջ թա-փանցում և ներշնչութեան ու արտաշնչութեան միանալով իւրացնել եմ տալիս չորս սնունդները:

Ես բնակւում եմ բոլոր սրտերի մէջ. ինձնից են յիշողու-թիւնը, գիտութիւնը և դատողութիւնը: Բոլոր Վեդաների մէջ ես եմ ճանաչելին. Վեդաների հեղինակ ու վեդայագէտ եմ ես:

Ահա երկու Անձական զօրութիւններն աշխարհում. մին բաժանելի և միւսն անբաժանելի. բաժանելին բոլոր էակ-ների մէջ է, անբաժանելին կոչւում է գերագոյն:

Բայց կայ և մի ուրիշ գերագոյն Անձական զօրութիւն՝ անայլայլ ու դերիշխան, որ Գերագոյն Հոգի է կոչւում, որ երեք աշխարհները թափանցելով պահում է նրանց:

Եւ որովհետև ես գերազանցում եմ բաժանելին ու նոյն իսկ Գերագոյն անբաժանելին, ուստի աշխարհում ու Վէդա-յում կոչւում եմ Գերագոյն Անձական Զօրութիւն, նա ամե-նագէտ է և պաշտում է ինձ իր ամբողջ էութեամբ:

Ահա ամենախորհրդաւոր վարդապետութիւնը բացատրեցի քեզ. ով այս գիտէ, իմաստուն է և նրա գործը լրանալու է:

Այստեղ վերջանում է Բհագավադգիթա՛յի տասնհինգերորդ գլուխը, որի անունն է Գերագոյն Անձական Զօրութեան հասնելու Եօգա:

*կատարելագործուած, ընդունակ չեն նրանց տեսնելու։*

*Այն լոյսը որ ցոլանում է արեգակից բովանդակ աշխարհի վրայ, այն որ փայլում է Լուսնի ու Կրակի մէջ, գիտցիր թէ դա իմ լոյսն է։*

*Երկրի մէջ թափանցելով՝ էակներին ես պահում եմ իմ ուժով, սնուցանում եմ խոտերը բոլոր ու դառնում քաղցրահամ սոմա։*

*Ես ջերմութիւն դառնալով շնչող մարմիններն եմ թափանցում և ներշնչութեան ու արտաշնչութեան միանալով իւրացնել եմ տալիս չորս սնունդները։*

*Ես բնակւում եմ բոլոր սրտերի մէջ. ինձնից են յիշողութիւնը, գիտութիւնը և դատողութիւնը։ Բոլոր Վեդաների մէջ ես եմ ճանաչելին. Վեդաների հեղինակ ու վեդայագէտ եմ ես։*

*Ահա երկու Անձնական զօրութիւններն աշխարհում. մին բաժանելի և միւսն անբաժանելի. բաժանելին բոլոր էակների մէջ է, անբաժանելին կոչւում է գերագոյն։*

*Բայց կայ և մի ուրիշ գերագոյն Անձնական զօրութիւն՝ անայլայլ ու գերիշխան, որ Գերագոյն Հոգի է կոչւում, որ երեք աշխարհները թափանցելով պահում է նրանց։*

*Եւ որովհետև ես գերազանցում եմ բաժանելին ու նոյն իսկ Գերագոյն անբաժանելին, ուստի աշխարհում ու Վէդայում կոչւում եմ Գերագոյն Անձնական Զօրութիւն, նա ամենագէտ է և պաշտում է ինձ իր ամբողջ էութեամբ։*

*Ահա ամենախորհրդաւոր վարդապետութիւնը բացատրեցի քեզ. ով այս գիտէ, իմաստուն է և նրա գործը լրանալու է։*

Այստեղ վերջանում է Բհագավադգի՛տա՛յի տասնհինգերորդ գլուխը, որի անունն է Գերագոյն Անձնական Զօրութեան հասնելու Եօգա։

---

## *ԺԶ.*

### Կրիշնան խօսեց.

*Անկեղծութիւն, ճշմարտասիրութիւն, գիտութեան Եօգայի մէջ յարատեւութիւն, ողորմածութիւն, չափաւորութիւն, բարեպաշտութիւն, մտախոհութիւն, օգնութիւն, շիտակութիւն,*

*Խաղաղասիրութիւն, ճշմարտախօսութիւն, քաղցրու-*

թիւն, հրաժարում, անդորրութիւն, բարեսրտութիւն,, գութ դէպի էակները, հանգստութիւն, հեզութիւն, ամօթխածութիւն, լրջութիւն:

Կորով, համբերութիւն, հաստատակամութիւն, մաքրութիւն, վարուեցողութիւն, համեստութիւն, ահա աստուածային ծնունդի յատկութիւնները, ո՛վ Բհա՛րատա:

Կեղծաւորութիւն, հպարտութիւն, ունայնամտութիւն, բարկութիւն, վայրահաջութիւն, տգիտութիւն· ահա Ասուրայի ծնունդի յատկութիւնները:

Աստուածային ծնունդը ազատութիւն է· Ասուրայի ծընունդը գերութիւն: Մի՛ տխրիր, դու աստուածային ծնունդ ես, ո՛վ Պա՛նդուի որդի:

Երկու ընութիւն կայ աշխարհում· աստուածային ու Ասուրաների· աստուածայինը ընդարձակօրէն բացատրեցի· այժմ լսիր Ասուրաներինը:

Ծագումն ու վերադարձը չեն ճանաչում Ասուրայի մարդիկ· ոչ մաքրութիւն, ոչ կանոն, ոչ ճշմարտութիւն կայ նրանց մէջ:

Առանց ճշմարտութեան, առանց կարգաւորութեան ու առանց նախախնամութեան են համարում աշխարհը, և թէ իբր մին միւսն առաջացնող երևոյթներ ու դիպուածի արդիւնք:

Այս հայեացքի մէջ մնալով, կորցնում են իրենց հոգին, նուաստացնում բանականութիւն, անցաւոր են լինում վայրագ գործերի և թշնամի են մարդկային սեռին:

Անհնատուր անյագ ցանկութեանց, հակուած խաբեբայութեան, ունայնամտութեան ու յիմարութեան, մոլորութիւնը տանում է նրանց վատ արարքների ու ներշնչում պիղծ ցանկութիւններ:

Խորհուրդները դատում, մահը կարծում են ամէն բանի վերջ· և աշխատում են յագեցնել իրենց ցանկութիւնները, նրանց մէջ տեսնելով ամէն բան:

Հարիւրաւոր յոյսերով ու անյուսութիւններով կաշկանդուած, ցանկութեան ու բարկութեան անձնատուր, աշխատում են իրենց ցանկութիւնը վայելելու համար, անարդար միջոցներով հարստութիւն դիզել:

«Ահա ինչ շահեցայ այսօր· ու պիտի վայելեմ այս ինչ հաճոյքը· այս ունեմ, շուտով պիտի ունենամ այս ինչ օգուտն էլ:

«Սպանեցի այս ինչ թշնամուս· պիտի սպանեմ նաև միւսներին· իշխան եմ ես· ես հարուստ եմ· երջանիկ եմ ես, հզօր, ուրախ·

*Պերճ ու մեծ իշխան եմ. ո՞վ կայ ուրիշ ինձ նման. զոհեր կանեմ, ողորմութիւն կտամ, հաճոյք կը վայելեմ»: Ահա ինչ են ասում՝ տգիտութեամբ մոլորուած:*

*Բազմաթիւ մտածմունքներով խռովուած, մոլորութեան ցանցի մէջ պաշարուած, զբաղուած, իրենց ցանկութեան վայելումով, ընկնում են պիղծ դժոխքի մէջ:*

*Ինքնավստահ, յամառ, հարստութեան սնափառութեամբ և յիմարութեամբ լցուած, զոհում են անուանական ողջակէզներ՝ կեղծաւորութեամբ և առանց ծիսական օրինակատարութեան:*

*Եսասէր, կատաղի, սնափառ, ցանկութեան ու բարկութեան հպատակ, անարգում են ինձ իրանց անձի և ուրիշների մարմնի մէջ՝ ատորացնելով:*

*Դրանց, այդ քինախնդիր, կատաղի ու ստորին մարդկանց ես նետում եմ մահուան յարափոխութեանց մէջ, թշուառօրէն վերածնելու սատանաների արգանդներում:*

*Սատանաների արգանդի մէջ ընկնելով, թափառելով ծնունդից ծնունդ ու ինձ երբէք չհասնելով՝ վերջապէս գնում են դժոխքի ճանապարհը:*

*Երեք են դժոխքի դռները, որով կորչում են մարդիկ. ցանկասիրութիւն, բարկութիւն և ագահութիւն. այս երեքին պէտք է թողնել:*

*Այն մարդը՝ որ հեռացել է խաւարի այս երեք դռներից, քայլում է դէպի անձի փրկութիւնը և գնում է գերագոյն ճանապարհը:*

*Բայց ով Օրէնքի պատուէրներից հեռանալով հետևում է իր ցանկութեանց կատարման, նա կատարելագործութեան չի հասնում, ոչ էլ երջանկութեան, ոչ էլ գերագոյն ճանապարհին:*

*Թող Օրէնքը քո հրամայողը լինի ու սովորեցնի ինչ պէտք է գործել ու ինչ չպէտք է գործել: Սովորելով օրէնքի պատուիրանների թոյլատրած գործերը, հաճի՛ր գործել այս աշխարհում:*

Այստեղ վերջանում է Բհագավադգի՛տա՛յի տասնվեցերորդ գլուխը՝ որի անունն է Աստուածային ու սատանայական ծննդեան տարբերութեան Եօգա:

---

## ԺԷ.

Արջունան խօսեց.

*Նոքա որ Օրէնքի պատուէրներից հեռանալով զոհում են լի հաւատքով, ո՞րն է նոցա տեղը, ո՛վ Կրիշնա, արդեօք ճշմարտութեան, բնազդի ու խաւարի՞:*

Կրիշնա խօսեց.

*Երեք տեսակ հաւատք կայ մարդոց մէջ, որոնք բնածին են ու ծագում են ճշմարտութիւնից, բազդից կամ խաւարից:*

*Ամէնքի ճշմարտութեան կերպարանքը հաւատքն է, ո՛վ Բհարատա. և հաւատացեալ մարդը ինչպէս հաւատքն է, այնպէս էլ ինքն է:*

*Ճշմարտութեան մարդիկ զոհում են աստուածներին. բնազդի մարդիկ Եաքշաներին ու Ռա՛քշասաներին. խաւարի մարդիկ ոգիներին և ուրուականներին:*

*Մարդիկ որ առանց Օրէնքը պահելու, անում են խիստ ճգնութիւններ, ու սնափառ, եսասէր և ցանկութեամբ, կրքով ու կատաղութեամբ լի են,*

*Եւ չարչարում են իրենց մարմնի մէջ բնակուած կենսական սկզբունքերն անմտութեան ինչպէս և ինձ՝ որ նոցա ներքին մարմնում եմ բնակում, գիտցիր թէ նոքա սատանայամիտ են:*

*Մարդոց համեմատ կան և երեք տեսակ հաճելի սնունդ, զոհ, ճգնութիւն ու ողորմութիւն. լսի՛ր նրանց տարբերութիւնը:*

*Կեանք, ճշմարտութիւն, ուժ, առողջութիւն, երջանկութիւն և ուրախութիւն աւելացնող համեղ, քաղցր, հաստատուն ու անուշ սնունդները ճշմարտութեան մարդոց են հաճելի:*

*Կծու, թթու, աղի, շատ տաք, դառն, տռիպ, տաքացնող սնունդները կրքի մարդկանց հաճելի են, իբր ցաւով ու հիւանդութեամբ բեղուն:*

*Հնացած, անհամ, հոտած ու նոյն իսկ դէն գցած ու կեղտոտ սնունդները խաւարի մարդկանց հաճելի են:*

*Առանց վարձատրութեան սպասելու և Օրէնքի համաձայն կատարուած զոհը, որ զոհում է սուրբ գործը կատարելու մտքով, ճշմարտութեան զոհն է:*

*Իսկ այն որ վարձատրութեան սպասելով ու կեղծաւորութեամբ է զոհում, գիտցիր թէ դա ցանկութեան զոհն է:*

*Առանց օրէնքի, առանց մատաղ բաժանելու, առանց աղօթքի, ժամերի ու հաւատքի արուած զոհը խաւարի զոհն է:*

*Աստուածներին, Բրահմաններին, ուսուցչին և ուսում-*

*նախկանին մատուցուած յարգանքը, մաքրութիւնը, շիտակութիւնը աստուածավայել ընթացքն ու հեզութիւնը՝ մարմնի օգնութիւն են կոչւում։*

*Մեղմ, ճշմարտախօս ու քաղցրահամբոյր լեզուն և կրօնական գրքերի ընթերցումը խօսքի ճգնութիւն են կոչւում։*

*Մտքի անդորրութիւնը, խաղաղութիւնը, լռութիւնը, անձնազսպութիւնը, անձի մաքրութիւնը, ահա թէ ինչը մտքի ճգնութիւն է կոչւում։*

*Ջերմեռանդ հաւատքով ու առանց վարձատրութեան արուած՝ մարդկանց այս երեք ճգնութիւնները ճշմարտութեան ճգնութիւնն են։*

*Փառքի, պատուի ու յարգանքի համար կեղծաւորութեամբ արուած ճգնութիւնը կոչւում է կրքի ճգնութիւն, որ անհաստատ է ու անստոյգ։*

*Մոլորուած երևակայութեամբ իր անձի չարչարման և ուրիշների կորուստի համար արուած ճգնութիւնը՝ խաւարի ճգնութիւնն է։*

*Լոկ ողորմութեան համար, առանց փոխարէն վճարի, ու տեղի, ժամանակի և արժանիքի համեմատ արուած ողորմութիւնը ճշմարտութեան ողորմութիւնն է։*

*Իսկ փոխադարձ վճարի կամ վարձատրութեան յուսով և իբր ակամայ արուած ողորմութիւնը բնազդի ողորմութիւնն է։*

*Տեղին, ժամանակին ու արժանիքին անհամաձայն, առանց ակնածութեան և վիրաւորիչ ողորմութիւնը խաւարի ողորմութիւնն է։*

*«Օ՛մ. Նա. Բարին» ահա Բրահմայի երեք աշխարհային անուանակոչութիւնները. Բրա՛հմանները, Վէդաներն ու Զոհը նրանից ստեղծուեցին հնապէս։*

*Ուստի Օ՛մ բառը չարտասանած, օրինական զոհը, ողորմութիւնն ու ճգնութիւնը չեն անում երբէք աստուածաբանները։*

*Նա. այսպէս են ասում նրանք՝ որ առանց սպասելու վարձատրութեան, զոհի, ճգնութեան ու ողորմութեան զանազան գործեր են կատարում, ազատութեան փափագով։*

*Ճշմարտութիւնը և ուղղամտութիւնը բարի են կոչւում. և գովելի ամէն գործ նոյնպէս բարի է կոչւում։*

*Զոհի, ճգնութեան ու ողորմութեան մէջ յարատևութիւնը բարի է կոչւում։*

*Առանց հաւատքի զոհը, ողորմութիւնը, ճգնութիւնը, գործը չար է կոչւում, և ոչինչ է թէ այս ու թէ այն աշխարհում։*

Այստեղ վերջանում է Բհագավադգի՛տա՛յի տասներեքերորդ գլուխը՝ որի անունն է Հաւատքի երեք տեսակների եօգա։

*(շարունակելի)* **Հ. Աճառեան**

# ԲՀԱԳԱՎԱԴԳԻ՛ՏԱ՛ ԿԱՄ ԵՐԱՆԵԼՈՒ ԵՐԳԸ.

(Շարունակութիւն)

## ԺԸ.

Արջունան խօսեց.

Անձնուրացութեան ու հրաժարման էակութիւնը ցանկանում եմ գիտենալ, ո՛վ մեծազօր, դանդրահեր սպանող Կեշինի։

Կրիշնան խօսեց.

Ցանկութեան գործերից հրաժարուելը՝ բանաստեղծները կոչում են հրաժարում. և ամբողջ գործերի վարձատրութիւնը թողնելը գիտունները կոչում են անձնուրացութիւն։

Այն գործերը որ պէտք է թողնել, մեղք են համարում իմաստունները. իսկ զոհի, ողորմութեան և ճգնութեան գործերը պէտք չէ թողնել ասում են ուրիշները։

Լսիր այժմ իմ պատուէրը անձնուրացութեան մասին, ո՛վ Բհարատաների լաւագոյնը։ Անձնուրացութիւնը, ո՛վ առիւծասիրտ, երեք տեսակ է լինում։

Զոհի, ողորմութեան և ճգնութեան գործերը պէտք չէ թողնել, այլ կատարել. որովհետև Զոհը, ողորմութիւնը և ճգնութիւնը սրբագործութիւններ են իմաստունների ասելով։

Եթէ ցանկութիւնը և վարձատրութիւնը թողել են, թող կատարեն այս գործերը. ահա իմ գերագոյն պատուէրն ու կամքը։

Անհրաժեշտ գործից հրաժարումը գործադրելի չէ. յիմարութիւն է մի այսպիսի անձնուրացութիւն և խաւարի ծնունդ։

Ով «դժուար է» ասելով ու մարմնական յոգնութիւնից վախենալով թողնում է գործը, նա հրաժարում է բնազդով միայն և իր անձնուրացութիւնից ոչ մի օգուտ չի քաղում։

«Պիտի անեմ». այսպէս պէտք է ասել ու կատարել անհրաժեշտ գործը, ո՛վ Արջունա. իսկ ցանկութիւնից և վարձատրութիւնից հրաժարուել՝ դա անձնուրացութեան հենց էութիւնն է։

Ոչ անյաջող գործից է հրաժարւում և ոչ յաջողակին հետևում նա՝ որ էապէս անձնուրաց է, խելացի և կասկածանքից ազատ։

Որովհետև մարմնաւոր մարդը բոլոր գործերից հրաժար-

*ուել անկարող է. բայց երբ գործերի վարձատրութիւնից հրաժարւում է, նա գործում է անձնուրացութիւն:*

*Անցանկալի, ցանկալի և սոցա խառնուրդը. ահա մահուանից յետոյ անանձնուրացների գործերի երեակ վարձատրութիւնը. բայց ոչ նաև անձնուրացների:*

*Սովորի՛ր ինձանից այն հինգ սկզբունքները, որ Ապացուցական Վարդապետութիւնը յայտարարում է իբր պարունակուած ամէն գործի մէջ:*

*Սոքա են Ուղղութիւնը, Ազդակը, Գործիքը, զանազան ջանքերը և հինգերորդ Աստուածային միջամտութիւնը:*

*Գործով, խօսքով ու խորհրդով կատարուած ամէն մարդկային գործ, բարի թէ չար, յիշեալ հնգից է առաջանում:*

*Այս ճշմարիտ լինելով, ով միակ գործիչը իրան է կարծում տգիտութեամբ, նա սխալ է մտածում:*

*Ով եսասէր չէ, և որի բանականութիւնը խաւարած չէ, սպանելով հանդերձ այս պատերազմիկներին, սպանող չէ ու մեղաւոր չէ:*

*Գիտութիւնը, Նրա առարկան ու Նրա Նիւթը. ահա գործողութեան երեք շարժիչները Գործարանը, Գործողութիւնը և Գործիչը. ահա և գործողութեան երեք հասկացողութիւնները:*

*Գիտութիւնը, Գործողութիւնը և Գործիչը երեք տեսակ են իրենց Յատկութեանց համեմատ. Յատկութեանց վարդապետութիւնը բացատրած լինելով, լսիր այժմ նրանց հետևութիւնը:*

*Այն գիտութիւնը որ բոլոր կենդանի էակների մէջ ցոյց է տալիս միակ անփոփոխելի էակը, բաժանեալ իրերի մէջ անբաժանելի, դա ճշմարիտ գիտութիւնն է:*

*Այն գիտութիւնը որ բոլոր կենդանի էակների մէջ տեսնում է իւրաքանչիւր էակի անհատական բնութիւնը, նա բնազդական գիտութիւնն է:*

*Իսկ այն անսկզբունք, նեղ ու անճիշտ գիտութիւնը որ նայում է գործին իբրև բոլորովին առանձին երևոյթ, կոչւում է խաւարի գիտութիւն:*

*Անհրաժեշտ, բաղձից ազատ գործը, կատարուած ցանկութիւնից և ատելութիւնից ազատ մարդուց և առանց վարձատրութեան ակնկալութեան, ճշմարտութեան գործն է:*

*Իր ցանկութեան գոհացման և իր եսի համար ու բազմաթիւ ջանադրութիւններով կատարուած գործը կրքի գործ է:*

*Առանց հետևանքը, շահը կամ վնասը և իր ուժերը կըշ-*

ունլու՝ յիմարութեամբ ձեռնարկուած գործը խաւարի գործ է:

Կրքից ու եսասիրութիւնից ազատ, հաստատակամութեամբ և արիութեամբ օժտուած, յաջողութիւնից ու անյաջողութիւնից անտարբեր գործիչը ճշմարտութեան գործիչ է:

Կրքոտ, գործերի վարձատրութիւնն ակնկալող, ագահ, վնասակար, անմաքուր, հաճոյքի ու ցաւի անձնատուր գործիչը կրքի գործիչ է:

Անընդունակ, ստորին, յամառ, խաբեբայ, անհոգ, դատարկապորտ, ծոյլ, նստակեաց ու քաշ եկող մարդը խաւարի գործիչ է:

Այժմ լսիր մտքի և յարատեւութեան երեք բաժանումները, ամբողջապէս ու մանրամասնօրէն, համաձայն անհատական յատկութեանց:

Այս միտքը որ գործելու և չգործելու, երկիւղի և ապահովութեան, կապանքի և ազատութեան ծագումն ու վերջը գիտէ, ճշմարտութեան միտք է:

Այն միտքը որ արդարն ու անարդարը, գործելու ու չգործելու բանը շփոթ կերպով գիտէ, բնազդական միտք է:

Այն միտքը որ անարդարութիւնն է կոչում արդարութիւնը, խաւարով պատած է և հակառակն է անում ամէն բանի, խաւարի միտքն է:

Այն յարատեւութիւնը որ մտքի, սրտի ու զգայարանների գործերը բռնում է անփոփոխելի Եօգայով, ճշմարտութեան յարատեւութիւնն է:

Այն յարատեւութիւնը որ հետեւում է բարուն, գեղեցկին ու օգտակարին, բնազդմամբ ձգտելով գործերի վարձատրութեան, դա կրքի յարատեւութիւնն է:

Այն անմիտ յարատեւութիւնը՝ որ քնից, երկիւղից, տխրութիւնից, սոսկումից ու յիմարութիւնից չի ազատում մարդուն, խաւարի յարատեւութիւնն է:

Այժմ լսիր հաճոյքի երեք տեսակները. երբ մէկը վարժութեամբ հրճւում է և վերջ դնում իր տխրութեան,

Եւ երբ ինչ որ սկզբում թոյն էր՝ դառնում է յետոյ նեկտառ, այն ժամանակ իր հաճոյքը կոչւում է ճշմարիտ, իբր ծնած իր մտքի ներքին անդորրութիւնից:

Այն հաճոյքը որ ծնում է զգայարանների և զգալի իրերի յարաբերութեամբ. և սկզբում նման է նեկտառի ու յետոյ թոյնի, դա կրքի հաճոյքն է:

Այն հաճոյքը որ սկզբում և իր հետեւանքների մէջ հոգու խաւարութիւն է միայն, անգործութեամբ, ծուլութեամբ և մոլորութեամբ զարգացած, դա խաւարի հաճոյքն է:

Ոչ երկրի վրայ, ոչ երկնքում աստուածների մէջ չկայ մի էութիւն որ բնութիւնից առաջացած այս երեք յատկութիւններից ազատ լինէր։

Բրահմանների, Կշատրիաների, Վայշիաների և Սուդրաների մէջ պաշտօնները բաժանուած են իրանց բնական յատկութեանց համեմատ։

Խաղաղութիւնը, ժուժկալութիւնը, ճգնութիւնը, մաքրութիւնը, համբերութիւնը, շիտակութիւնը, գիտութիւնը, գիտելիքները և աստուածածանօթութիւնը Բրահմանի բնածին պաշտօնն է։

Կտրճութիւն, կորով, հաստատակամութիւն, ճարպիկութիւն, կռուի մէջ աներկիւղութիւն, ողորմութիւն, վարչականութիւն. ահա Կշատրիայի բնածին պաշտօնը։

Երկրագործութիւն, խաշնապահութիւն, վաճառականութիւն վայշիայի բնածին պաշտօններն են։ Իսկ ծառայել միւսներին Սուդրայի բնածին պաշտօնն է։

Այն մարդը որ ինչ որ էլ լինի իր պաշտօնը, գոհ է նրանից, հասնում է կատարելութեան։ Այժմ լսիր թէ ինչպէս մարդ իր պաշտօնից գոհունակութեամբ կատարելութեան է հասնում։

Իր գործերով պատուելով Նրան որից ծագել են էակները և որից այս բոլոր տիեզերքն է կազմուած, հասնում է մարդ կատարելութեան։

Աւելի լաւ է սեփական ստորին պաշտօնը ուրիշի բարձր պաշտօնից. բնածին պաշտօնի գործերը կատարելով մարդ չի մեղանչում։

Բնածին պաշտօնը նոյն իսկ եթէ չարիքով միացած լինի, չպէտք է թողնել. որովհետև ամէն գործ չարիքով պաշարուած է, ինչպէս կրակը ծխով։

Միտքը կապանքներից ազատ, ամէն ժամանակ անձնիշխան ու ցանկութիւնները վանած մարդը հանգստի գերագոյն կատարելութեան է հասնում անձնուրացութեամբ։

Հասնելով կատարելութեան, այնուհետև գնում է Բրահմային. սովորիր այդ ինձանից համառօտիւ, որովհետև այդ է գիտութեան գերագոյն կայանը։

Մաքուր բանականութեամբ միացած, հոգին յարատեւութեամբ նուաճած, աղմուկն և զգայութիւնները թողած, ցանկութիւններն ու ատելութիւնը հեռացրած,

Առանձնակեաց, սակաւապէտ, իր խօսքին, մարմնին ու մտքին տէր, միշտ կատարելով գերագոյն հոգեւոր Եօգան, կրքերը հեռացնելու մտադիր։

· Եսասիրութիւնից, բռնութիւնից, հպարտութիւնից, սէրուց, բարկութիւնից, շքախմբերից հեռու, այլասէր, հանդարտ, հաղորդակցւում է Աստուածային էութեան:

Աստուծոյ հետ հաղորդ, հոգին անդորր, նա է՛լ չի տառապում, նա է՛լ չի ցանկանում. անտարբեր դէպի ամէն կենդանի էակ, ընդունում է իմ գերագոյն պաշտամունքը:

Պաշտելով ինձ, ճանաչում է ինձ այնպէս ինչպէս եմ ես իմ էութեան մէջ, և ինձ իմ էութեամբս ճանաչելով մտնում է իմ մէջ և է՛լ ուրիշ չէ:

Ով էլ որ բոլոր գործերը անդադար կատարում է՝ ինձ միայն դիմելով, իմ շնորհով հասնում է յաւիտենական և անայլայլ բնակարանը:

Կատարի՛ր ուրեմն մտքով բոլոր գործերից հրաժարումը ինձ համար. կատարի՛ր բանականութեան Եօգան և մտածիր միշտ իմ մասին:

Իմ վրայ մտածելով բոլոր վտանգներից դու իմ շնորհով կանցնիս. իսկ եթէ դու եսասիրութեամբ չլսես ինձ, պիտի կորչիս:

Դու եսասիրաբար մտածելով, «Ես չեմ կռուիլ» ասում ես. այս միտքը անտեղի է. բնութիւնը քեզ կստիպի:

Դու քու բնածին պաշտօնովդ կապուած, ինչ որ կատարել չես ուզում յիմարաբար, պիտի անես ակամայ:

Մի իշխան կայ նստած բոլոր կենդանի-էակների սրտում, ո՜վ Արջունա, որ շարժում է բոլոր էակներին իբր մի ծածուկ զօրութեամբ:

Նրան ապաստանիր քո բոլոր էութեամբ, և նրա շնորհով դու կը հասնիս գերագոյն հանգիստը, յաւիտենական բնակարանը:

Ահա սովորեցրի քեզ խորհրդաւոր գիտութիւնը իր գաղտնիքների գաղտնիքներով. հետախուզիր նրան մանրամասն և յետոյ արա՛ ինչպէս ուզում ես:

Լսիր և իմ վերջին խօսքերն՝ բովանդակ գաղտնիքների ծայրագոյնը. դու իմ սիրելին ես և իմ խօսքերը քեզ օգտակար կը լինին:

Մտածի՛ր ինձ, պաշտի՛ր ինձ, զոհի՛ր ինձ, օրհնի՛ր ինձ, և դու ինձ կը հասնիս. իմ խոստումը ճշմարիտ է և դու իմ սիրելին ես:

Թո՛ղ բոլոր օտար պաշտամունքները, և միայն ինձ ապաստանիր. ես քեզ բոլոր մեղքերից կը փրկեմ. մի՛ տխրիր:

Մի՛ պատմիր իմ այս խօսքերս նրանց՝ որ անժուժկալ են, անկրօն են. որ չեն ուզում լսել, որ ինձ ուրանում են:

*Բայց նա որ իմ այս գերագոյն գաղտնիքներս իմ ծառաների մէջ տարածում է, մատուցանելով ինձ գերագոյն պաշտամունքը, նա ինձ պիտի գայ անտարակոյս:*

*Ոչ ոք չի կարող մարդկանց մէջ սրանից աւելի հաճելի գործ կատարել, և ուրիշ ոչ ոք երկրի վրայ չի կարող աւելի սիրելի լինել ինձ:*

*Ով կարդայ այս մեր սրբազան խօսակցութիւնը, գիտութեան զոհը մատուցած պիտի լինի ինձ. այդ է իմ միտքը:*

*Եւ այն հաւատացեալ մարդը՝ որ առանց հակառակութեան լսում է նրան, նա էլ քաւուած պիտի երթայ մաքրակենցաղ երանեալների աշխարհը:*

*Արդեօք լսեցի՞ր այս բոլորը, ո՛վ Պրիթայի որդի, քո սեւեռուն մտքով. և արդեօք տգիտութեան խռովութիւնները անհետացա՞ն քեզ համար:*

Արջունան խօսեց.

*Կորաւ խռովութիւնը. ես ստացայ սրբազան աւանդութիւնը քո շնորհիւ, ո՛վ Աստուած. ես անվրդով եմ այժմ. տարակոյսս փարատուած է. ես կը կատարեմ քո խօսքերը:*

Սանջայան խօսեց.

*Եւ ես Վասուդեւայի և Պրիթայի մեծահոգի որդու այս վեհագոյն խօսակցութիւնը լսում էի փշաքաղուած:*

*Վիասայի շնորհիւ լսելով ես Եօգայի այս գերագոյն գաղտնիքը՝ Եօգայի տէր Կրիշնայից պատմուած:*

*Ո՛վ Թագաւոր, ես յիշում եմ, յիշում եմ անդադար Արջունայի և Կրիշնայի այս գերագոյն խօսակցութիւնը, և հրճւում եմ ընդմիշտ ընդմիշտ:*

*Եւ երբ յիշում եմ, յիշում եմ Հարիի այն գերընական երևոյթը, ես մնում եմ զարմացած ու հրճւում եմ անվերջ անվախճան:*

*Այնտեղ ուր է Եօգայի տէրը՝ Կրիշնան, այնտեղ ուր է Պրիթայի աղեղնաւոր որդին, այնտեղ է և երջանկութիւնը, յաղթութիւնը, փրկութիւնը, հաստատակամութիւնը: Այս է իմ հաւատքը:*

Այստեղ վերջանում է Բհագավադգի՛տա՛յի տասնութերորդ գլուխը, որի անունն է Հրաժարման ու Անձնուրացութեան Եօգա:

Այստեղ լրանում է Բհագավադգի՛տա՛ն:

*Շուբհամ աստու սարվաջագատամ*
*(Երջանիկ թող լինին բոլոր էակները)*

**Հ. Աճառեան**

# ՎՐԻՊԱԿՆԵՐ

| էջ | տող | սխալ | ուղիղ |
|---|---|---|---|
| 4 | 11 | պմնդուխ | Գմնդուխ |
| | 15 | Ծուխուղհմնիա | Ծուխուղհմնիա, |
| 5 | 3 | կուրունների | Կուրունների |
| | 6 | բոլորը | բոլոր՝ |
| | 18 | Դհրշտադհումա | Դհրշտադյումա |
| | 18 | Սմտհակի | Սմտյակի |
| | 20 | սաօրհագրայի | Սաօրհագրայի |
| | 25 | կապկագրոշ | կապկագրօշ |
| | 6 ն. | Սանջայհան | Սանջայան |
| 6 | 10 | զգացուած | զգածուած |
| 7 | 8 | խառնութիւնը | խառնակութիւն |
| | 4 ն. | զգացուած | զգածուած |
| 8 | 7 ն. | է չէ | չէ |
| 9 | 9 ն. | ։ | , |
| | 8 ն. | անճառելի | անճառելի, |
| | 3 ն. | ծնում | ծնւում |
| | 2 ն. | ծնի. ինչու | ծնուի. ինչ որ |
| 10 | 4 | Իբր | Իբրև . |
| | 5 ն. | վայսխարներ | վայսխաներ |
| 11 | 20 | նրա | նոցա վարձատրութեան. մի գործիր |
| | 23 | առաջ | և անյաջողութեան առաջ |
| 12 | 4 | հանգչելի | հանգչելիս, |
| | 7 | երջանիկ | երջանիկ, |
| | 9 | մէջ, | մէջ, ուրախութիւնից ազատ է յաջողութեան մէջ, |
| | 17 | է | է։ |
| 14 | 1 ն. | (ծանօթութիւնը տանել նախորդ երեսը) | |
| 17 | 19 | դիմանում | դիմում |
| 19 | 15 | լով | լով և |
| | 17 | զգան | զգաս |
| . | 8 ն. | անջանտուած | անջատուած |
| 23 | 4 | մինակ | մենակ, |